Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5
ՄԱՅԻՍ
1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԸ

ՅՈՒ. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ— Գիտատեխնիկական առաջադիմության կուրսով . . . . . . . . . 3
Ի. ԾԱՄԵՐՅԱՆ— Սովետական ժողովրդի զարգացումը սոցիալիզմի կատարելագործման պայմաններում . . 11
Ճ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ— Ռեզերվները՝ գործողության մեջ . . 17

ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ, Ռ. ՎԱԼԵՍՅԱՆ— Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացումը . . 23
Ա. ՍԱՔԱՆՅԱՆ— Ձեռնարկության մակնիշի պատիվը . . 28

ՄԱՐՔՍԱՅԻՆ ՓՈՐՁՈՒ. ԱԿՏԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Քննադատությունը և ինքնաքննադատությունը սոցիալիստական դեմոկրատիայի համակարգում . . . . . . . . . 35
Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սովետական մարդու տնտեսական կուլտուրան . . . . . . . . 42
Վ. ՏՈՒՐՅԱՆ— Ընտանեկան և հասարակական դաստիարակության դիալեկտիկան . . . . . . 47
Վ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ— Գյուղատնտեսության աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացման ուղիները . . 53

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Կոմունիստի ազնիվ և անաղարտ կերպարի համար . . . . . . . . 59*

ՍՈՎԵՏՆԵՐ. ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

*Սեդա ԲԱՐՍԵՂՅԱՆ— Աշխատավորների հետ կապի կարևոր միջոցը . . . . . . . . 68*

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

*Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— «Նեոգլոբալիզմի» դոկտրինայի ագրեսիվ էությունը . . . . . . . . 73*

ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

*Ա. ՍԻՄՈՆՅԱՆ— Մարտական ու աշխատանքային սխրագործությունների ուղիով . . . . . . 81*

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՄԻՋՈՑՆԵՐԸ

*Ս. ԵՐԻՑՅԱՆ— Հեռուստատեսություն. հնարավորություններ և արդյունավետություն . . . . . . . 88*

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Ե. ՏՈՆԵՐՅԱՆ— Հեղափոխությամբ ծնվածը . . . . 94*



Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանքի՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11





# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

**ՅՈՒ. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ**
**Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, ողջ առաջադեմ մարդկությունը պատրաստվում են հանդիսավոր կերպով նշելու մեծ Հոկտեմբերի հոբելյանը։ «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին նախապատրաստվելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը համոզիչ կերպով բնութագրում է Հոկտեմբերի հաղթանակի պատմական նշանակությունը, Հոկտեմբեր, որը քաղաքական ու սոցիալական խոր փոփոխությունների սկիզբը դրեց ո՛չ միայն մեր երկրում, այլև ամբողջ աշխարհում։

Յոթանասուն տարում կուսակցության ու ժողովրդի ջանքերով անճանաչելիորեն փոխվել է երկրի դեմքը՝ նրա սոցիալական ենթակառուցվածքը, արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, ստեղծվել է միասնական, պլանաչափորեն զարգացող սոցիալ-տնտեսական մի համալիր։ Պատմական կարճ ժամանակահատվածում ձեռք են բերվել աննախադեպ հաջողություններ։ 1986 թվականին երկրի ազգային եկամուտը նախապատերազմյանի համեմատությամբ մեծացել է 70 անգամ։ Եթե արդյունաբերական արտադրանքի բաժինը համաշխարհային արտադրության մեջ մինչև հեղափոխությունը հասնում էր հազիվ 4 տոկոսի, ապա այժմ այն կազմում է մեկ հինգերորդ մասը։ Գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը սովետական իշխանության տարիներին մեծացել է 4,5 անգամ։

Ամրակուռ են ՍՍՀՄ-ի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը։ Մեր երկրում ոչ միայն հռչակվել, այլև կենսագործվել է ազգերի ու ազգությունների իրավահավասարությունը։ Նրանց եղբայրական բարեկամությունը կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության կենսահաստատ ուժի ու հաղթանակի վառ վկայությունն է։ Ծաղկել է սովետական ժողովրդի բովանդակությամբ սոցիալիստական և ձևով ազգային մշակույթը։

Եղբայրական հանրապետությունների միասնական ընտանիքում զարգանում ու բարգավաճում է մեր հանրապետությունը։ Նախահեղափոխական Հայաստանը հետամնաց ագրարային երկիր էր։ Սովետական իշխանության առաջին իսկ օրերից հանրապետությունում սկսեց հաջողությամբ զարգանալ արդյունաբերությունը։ Ինդուստրացման հիմքը դրվեց էներգետիկ բազայի ստեղծմամբ։ Մեկ-երկու տասնամյակում շարք մտան մի շարք հիդրոէլեկտրակայաններ, ստեղծվեցին զարգացած արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են հաստոցաշինությունը, գունավոր մետալուրգիան, մեծ քիմիան։ Արդեն մինչև 1940 թվականը հանրապետության ինդուստրիայի արտադրանքը նախահեղափոխական մակարդակը գերազանցել էր 8,7 անգամ։ Հայկական ՍՍՀ արդյունաբերությունը սրընթաց զարգացավ հատկապես հետպատերազմյան հնգամյակների տարիներին։

Ջերմային ու ատոմային հզոր էլեկտրակայանների գործարկմամբ հանրապետությունում ստեղծվեց ծանրակշիռ էներգետիկ բազա։ Զարգացում ստացավ էլեկ-

տրատեխնիկական արդյունաբերությունը: Ստեղծվեց նոր ճյուղ՝ սարքաշինությունը, որի բազայի վրա հետագայում զարգացավ ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը:

Այսօր հանրապետությունում գործում են 520 արդյունաբերական ձեռնարկություն և միավորում: Արդյունաբերության անշեղ զարգացումը, թողարկվող արտադրատեսակների ընդլայնումն ու որակի բարելավումը ամուր հիմք ստեղծեցին միութենական հանրապետությունների և արտասահմանյան երկրների հետ Հայաստանի տնտեսական կապերի մշտական խորացման համար: Ներկայումս հանրապետության լեռնահանքային, քիմիական ու նավթաքիմիական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, սարքաշինական և արդյունաբերության այլ ճյուղերի արտադրանքը ընդհանուր միութենական արտահանության կազմում ուղարկվում է երկրի սահմաններից դուրս: Արտահանվում է Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, Չարենցավանի հաստոցաշինական, Երևանի ժամացույցի գործարանների և ուրիշ շատ առաջատար ձեռնարկությունների արտադրանքը: Մի շարք երկրներում մեծ պահանջարկ ունեն այնպիսի արժեքավոր շինանյութեր, ինչպիսիք են պեռլիտը, տուֆը, մարմարը, սննդի ու թեթև արդյունաբերության շատ արտադրատեսակներ:

Արտադրողական ուժերի տերիտորիալ տեղաբաշխման ու զարգացման սոցիալիստական սկզբունքներն ապահովում են յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկայի բազմակողմանի ու կոմպլեքսային զարգացումը: Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը զարգանում է միասնական պլանով՝ որպես ընդհանուր միութենական տնտեսության օրգանական մաս:

Հայկական ՍՍՀ-ի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական առանձնահատկություններից մեկը բարձր արդյունքների ձեռքբերումն է գիտատեխնիկական առաջադիմության և աշխատավորների կրթության բնագավառում: Դա հնարավորություն ստեղծեց արդյունավետորեն զարգացնելու գիտությունը: Այժմ Հայաստանի գիտությունների ակադեմիայի համակարգում, բուհերում, ճյուղային գիտահետազոտական ինստիտուտներում և լաբորատորիաներում աշխատում են մոտ 22 հազար գիտական աշխատողներ:

Կրթության ու գիտության լայն համակարգի ստեղծման շնորհիվ հնարավոր եղավ հանրապետությունում զարգացնել գիտատեխնիկական առաջադիմությունը բնորոշող այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկան, ճշգրիտ հաստոցաշինությունը, փոքր տոննաժային քիմիան, ստեղծել զարգացած գյուղատնտեսություն, ժողովրդական առողջապահություն, մշակույթ:

Այսօր կուսակցությունն առաջադրում է սոցիալ-տնտեսական առաջադիմության արագացման՝ որպես տնտեսական քաղաքականության արմատական հարցի, նոր պատասխանատու խնդիրներ:

Ինչպես նշել է ընկեր Մ Ս. Գորբաչովը, «Խոսքը աճի նոր որակի, զարգացման ինտենսիվ ռելսերի վրա փոխադրելու, ստրատեգիական կարևոր ուղղություններում արագորեն առաջ ընթանալու, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, կառավարման արդյունավետ ձևերի օգտագործման, աշխատանքի կազմակերպման ու խթանման, սոցիալական պրոբլեմների առավել լիակատար լուծման մասին է» (Մ. Ս. Գորբաչով: **Ընտիր ճառեր և հոդվածներ**: «Հայաստան» հրատ., Երևան, 1986, էջ 142—143):

Խնդիր է դրված՝ արագացնել մեր էկոնոմիկայի աճի տեմպերը, խորապես վերակառուցել արտադրությունն ու կառավարման համակարգը, ողջ տնտեսական մեխանիզմը, հաղթահարել նեգատիվ միտումները, վճռական փոփոխություններ մտցնել գիտատեխնիկական առաջադիմության արագացման պրոբլեմների նկատմամբ բուն մոտեցման մեջ, ապահովել երկրի դուրսբերումը աշխատանքի արտադրողականության և էկոնոմիկայի արդյունավետության առաջավոր բնագծեր:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումն առանձնապես կենսական է մեր հանրապետության համար, որն ունի սահմանափակ տերիտորիալ ու բնական ռեսուրսներ և փոխադրական հնարավորություններ ու կլիմայական բարդ պայմաններ:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» 1975 թվականի ապրիլի 16-ի հայտնի որոշումը հանրապետությանը նպատակամղեց դեպի զարգաց-



ման ինտենսիվ ուղի, սահմանեց հիմնական խնդիրները տևական ժամանակաշրջանի համար: Այդ որոշման գործնական իրականացումը հանրապետության ժողովրդական տնտեսությանը հնարավորություն տվեց հասնելու զարգացման արագացված տեմպերի, քանակական ու որակական զգալի տեղաշարժերի:

Կարևոր միջոցառումներ են իրականացվել արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործման ուղղությամբ, մեքենաշինության աշխատատար, սակավ նյութատար ու էներգատար ճյուղերի՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական արդյունաբերության, սարքաշինության, ճշգրիտ մեքենաշինության, հաստոցաշինության, ինչպես նաև թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման առաջանցիկ տեմպերի հաշվին:

Արդյունաբերության զարգացումը ուղեկցվում է տնտեսական արդյունավետության բարձրացմամբ: Կատարելագործվում են արտադրության կառավարման կազմակերպական ձևերը: Այսօր հանրապետությունում գործող արտադրական 80 միավորումները թողարկում են արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մոտ 50 տոկոսը: «Հայէլեկտրամեքենա», «Լույս», «Հայէլեկտրաապարատ», «Մասիս» և այլ առաջավոր միավորումների աշխատանքի փորձը վկայում է կառավարման այդպիսի ձևի արդյունավետության մասին: Նոր երևույթ է նաև ձեռնարկությունների մասնաճյուղերի ու արտադրական տեղամասերի ստեղծումը հանրապետության զանազան շրջաններում: Արդեն գործում են 220 այդպիսի օբյեկտներ:

Վերջին տասնամյակում միագումար հասարակական արդյունքն աճել է 80, արտադրված ազգային եկամուտը՝ 90 տոկոսով, միավորումների արտադրության ծավալը գրեթե կրկնապատկվել է: Ընդ որում 1985 թվականին մեքենաշինության ու մետաղամշակման տեսակարար կշիռը արդյունաբերության ընդհանուր ծավալում կազմեց 30,4 տոկոս՝ 1975 թվականի 20,6 տոկոսի դիմաց:

Մեր հանրապետության համար հրատապ են նյութատար ու էներգատար արտադրությունները սահմանափակելու, դրանց շահագործման անվտանգությունն ապահովելու, բնական միջավայրի վրա բացասաբար ազդող մի շարք արտադրություններ փակելու և կրճատելու նպատակով կատարվող աշխատանքները: Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են մի շարք կարևորագույն միջոցառումներ նոր տեխնիկայի գծով, յուրացվել են նոր արտադրատեսակներ, որոնք համապատասխանում են հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին, արմատավորվել են նոր տեխնոլոգիական պրոցեսներ, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ և այլն:

Հանրապետության էկոնոմիկան ավելի ու ավելի է կողմնորոշվում դեպի վառելիքի, հումքի ու նյութերի նվազագույն ներմուծում, դեպի տեղական հումքի կոմպլեքսային վերամշակում, ազատ աշխատանքային ռեսուրսների ավելի լայն ներդրում հանրային արտադրության մեջ, վերջին տասնամյակներում ստեղծված գիտական ու գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործում:

Ժողովրդական տնտեսության զարգացման առանձնահատկությունները, ստեղծված ավանդույթները նպաստեցին հանրապետության որոշակի գիտական մասնագիտացման ձևավորմանը: Ներկայումս գիտության ու գիտական սպասարկման կազմակերպություններում զբաղված է ավելի քան 47 հազար մարդ: Այդ բնագավառում կարևոր դեր է խաղում Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին ստեղծված գիտությունների ակադեմիան՝ իր 33 գիտահետազոտական հաստատություններով, որտեղ աշխատում է մոտ 10 հազար մարդ, այդ թվում՝ 3,2 հազար գիտաշխատող:

Հանրապետության գիտական պոտենցիալի նշանակալի մասը կենտրոնացված է միութենական և միութենական-հանրապետական ենթակայության ճյուղերում, որտեղ զբաղված է այդ ոլորտում աշխատողների կեսից ավելին: Ավելացել է կոնստրուկտորական ստորաբաժանումների քանակը արդյունաբերական ձեռնարկություններում: Բուհերում աշխատում է հանրապետության գիտաշխատողների 36 տոկոսից ավելին:

Մեզանում հիմնարար հետազոտություններ են կատարվում էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի ու կառավարման ավտոմատացված համակարգերի, աստղաֆիզիկայի, միջուկային ֆիզիկայի և էլեմենտար մասնիկների ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի, էլեկտրոնիկայի, պինդ մարմնի ֆիզիկայի բնագավառներում, մաթեմատիկայի,

մեխանիկայի, միկրոկենսաբանության, կենսաքիմիայի, կենսաֆիզիկայի, օրգանական ու անօրգանական քիմիայի, երկրաբանության մի շարք ուղղություններում:

Էլեկտրոնային տեխնիկայի, ռադիոտեխնիկայի, մաթեմատիկայի և այլ բնագավառներում կատարվող աշխատանքները հիմք հանդիսացան էլեկտրոնային-հաշվողական տեխնիկայի ու կառավարման ավտոմատացված համակարգերի, նոր ռադիոտեխնիկական և էլեկտրոնային սարքերի ստեղծման ու արտադրության աշխատանքների լայնորեն զարգացման համար: Գիտությունների ակադեմիայի ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի, պետական համալսարանի կոնդենսացված միջավայրերի ֆիզիկայի ինստիտուտի կողմից հատուկ բյուրեղների ստացման ուղղությամբ կատարվող մշակումների հիման վրա հաջողությամբ զարգանում է արդյունաբերական արտադրությունը Կիրովականի քաղաքում: Հայտնաբերվել են կատարյալ բյուրեղներ և դրանց հիման վրա ստեղծվել օպտիկական նոր քվանտային գեներատորներ:

Գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտի մշակած ինքնատարածվող բարձր ջերմաստիճանային սինթեզի տեխնոլոգիան հաջողությամբ օգտագործվում է համապատասխան տաքացուցիչների արտադրության մեջ: Զգալի հետաքրքրություն է ներկայացնում հազվագյուտ հողային տարրերի հիման վրա դժվարահալ միացությունների ստացման փորձնական-արդյունաբերական տեխնոլոգիան, որ մշակում է ինստիտուտը:

Գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտների գիտահետազոտական և փորձարարական աշխատանքների արդյունքների արմատավորումը նպաստում է քիմիական ռեակտիվների և դեղամիջոցների արտադրության հաջող զարգացմանը:

Միջոցառումներ են իրականացվել նաև գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի ինստիտուտի մշակած կերային սպիտակուցով բուսական մնացորդների հարստացման, անասնապահական համալիրներում թափոնների վնասազերծման, դրանց օգտագործման և կերանյութերի արտադրության համար օգտագործվող մեթանային խմորման տեխնոլոգիաները արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ:

Զգալի աշխատանքներ են կատարվում գյուղատնտեսական բույսերի վնասատուների դեմ պայքարելու համար միկրոօրգանիզմների նոր շտամմների ստեղծման, սպիտակուցի միկրոբիոլոգիական սինթեզի, հանրապետության բնական հարստությունների պահպանության ու նորացման, լեռնալանջերի անտառապատման նպատակով:

Հանրապետության գիտնականների ջանքերն ուղղված են ֆիզիկաքիմիական կենսաբանության և կենսատեխնոլոգիայի ու դրանց արդյունքները գյուղատնտեսական արտադրության մեջ ներդնելու բնագավառում կատարվող գիտահետազոտական աշխատանքների հետագա զարգացմանը:

Առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, հողագործության կուլտուրայի բարձրացման, ոռոգելի հողերի ընդլայնման և ավելի ինտենսիվ օգտագործման շնորհիվ գյուղատնտեսական արտադրությունը հանրապետությունում ընդունել է ավելի կայուն բնույթ: Ստեղծվել և արտադրության մեջ արմատավորվում են հացահատիկային կուլտուրաների նոր, բարձր բերքատու տեսակներ: Բանջարանոցային կուլտուրաների նոր տեսակների լայն արմատավորումը՝ մշակման ագրոտեխնիկական եղանակների, պարարտացման գիտականորեն հիմնավորված նորմաների կիրառման, բարձր արդյունավետ հերբիցիդների օգտագործման հետ միասին, հնարավորություն է տալիս ավելացնելու բանջարեղենի արտադրությունը:

Հողի արդյունավետ օգտագործման, բերքատվության բարձրացման և այդ հիմքի վրա գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում մեծ դեր են խաղում հակաէռոզիոն միջոցառումները, Արարատյան դաշտավայրի աղուտ-ալկալի հողերի յուրացման տեխնոլոգիան ու դրանց ներգրավումը գյուղատնտեսական շրջանառության մեջ, մշակվող կուլտուրաների վնասատուների ու հիվանդությունների դեմ մղվող պայքարի միջոցառումները: Մի շարք բարձրարդյունավետ մեթոդներ են արմատավորվում նաև անասնապահության մեջ:

Վերջին տարիներին հանրապետության շինարարական կազմակերպություններում ակտիվացել է գիտության ու տեխնիկայի նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման հիման վրա շինարարության տեխնիկական մակարդակի բարձրացման գործը: Զգալիորեն աճել են խոշոր չափերի տարրերից, հանգույցներից, պանելներից ու բլոկներից կատարվող շինարարության ծավալները՝ ապահովելով կրող ու պահպանիչ կոնստրուկցիաների հավաքովիությունը, դրանց պատրաստումը թեթև բետոններից, հավաքովի, նախօրոք լարված երկաթբետոնե կոնստրուկցիաների կիրառումը: Գրեթե լրիվ մեքենայացված են մոնտաժային-շինարարական, բեռնման-բեռնաթափման, բետոնային և երկաթբետոնե աշխատանքները: Յուրացվել է մի շարք արդյունավետ կոնստրուկցիաների և նյութերի արտադրությունը, արմատավորվել են շենքերի, այդ թվում և միաձույլ բետոնից պատրաստվող շենքերի կառուցման առաջադիմական կոնստրուկտիվ համակարգեր ու մեթոդներ, ավելացել է շինանյութերի արտադրությունը: Շինարարության և ինդուստրիալ տնաշինության տեխնիկական մակարդակի բարձրացման գործում կարևոր դեր են խաղում շինարարական պրոֆիլի գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունները:

Հետազոտություններ են կատարվում աշխատավորների առողջության պահպանման, սրտանոթային հիվանդությունների և չարորակ գոյացումների ախտորոշման ու բուժման խնդիրների լուծման բնագավառում: Դա նպաստում է բնակչությանը ցույց տրվող բուժ-պրոֆիլակտիկ օգնության մակարդակի բարձրացմանը: Կարելի է նշել այնպիսի գիտական ստորաբաժանումներ, ինչպիսիք են մանկաբարձության և գինեկոլոգիայի, ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտները, պրոկտոլոգիայի վերջերս ստեղծված ինստիտուտը, սրտանոթային վիրաբուժության համամիութենական կենտրոնի մասնաճյուղը և այլն:

Հանրապետությունում լայնորեն զարգացել են հետազոտությունները հասարակական գիտությունների գծով: Մեր պատմաբանները, տնտեսագետները, փիլիսոփաները, գրականագետները և մյուս գիտական աշխատողները հրատարակել են մենագրություններ, որոնցում բացահայտվում են լենինյան գաղափարների կենսական ուժը, դրանց ներգործությունը արդի պատմական պրոցեսի վրա:

Ընդհանուր առմամբ հանրապետությունում գիտության զարգացումը կարող է ապահովել էկոնոմիկայի ու սոցիալական ոլորտի դուրսբերումը նոր, ավելի բարձր բնագծեր: Եվ այսօր, արդի փուլում կուսակցության առաջադրած պահանջների լույսի ներքո անհրաժեշտ է քննադատաբար վերլուծել հանրապետության ժողովրդական տնտեսության վիճակը՝ շեշտը դնելով նրա գիտատեխնիկական պոտենցիալի բարձրացման, թողարկվող արտադրանքի որակը լավագույն համաշխարհային նմուշների մակարդակին հասցնելու, աշխատանքի արտադրողականության աճի վրա: Հենց գիտատեխնիկական առաջադիմությունն է, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում պետք է ապահովի առաջադրված խնդիրների արդյունավետ լուծումը:

Գործերի վիճակն այդ դիրքերից վերլուծելով՝ Հայաստանի կոմկուսակցության XXVIII համագումարը նշեց, որ գիտատեխնիկական առաջադիմության արագացման և արտադրության ինտենսիվացման գործում հանրապետությունում դեռևս բավարար չափով չի օգտագործվում առկա գիտատեխնիկական պոտենցիալը: Գիտական կազմակերպությունների գործունեությունը լրիվ չափով ուղղված չէ այդ արմատական խնդրի լուծմանը:

Առանձնապես լուրջ թերություններ կան գիտության ու տեխնիկայի նվաճումները արտադրության մեջ արմատավորելու, փոխհատուցելիության ժամկետները կրճատելու և այդ միջոցառումների բարձր արդյունավետությունն ապահովելու գործում: Քիչ են միջոցառումներ ներդրվում գիտատեխնիկական առաջադիմության առաջատար ուղղություններում: Շատ դեպքերում, չնայած կատարվող նշանակալի ծախսումներին, չի ապահովվում անհրաժեշտ տնտեսական արդյունքի ստացումը: Հանրապետության շատ ձեռնարկություններում դանդաղ է կրճատվում ձեռքի աշխատանքը: Արդյունավետորեն չեն օգտագործվում մեքենայացված հոսքագծերն ու ավտոմատ գծերը: Դանդաղ են արդիականացվում և նորացվում տեխնոլոգիական սարքավորումները, որոնց նշանակալի մասը բարոյապես ու ֆիզիկապես մաշվել է:

Բարձր է հնացած սարքավորումների շահագործման միջին տարիքը: Այսպես, հանրապետությունում դարբնոցամամլիչային մեքենաների համար այն կազմում է միջին հաշվով 20 տարի, հիդրավլիկ մամլիչների, քիմիական սարքավորումների, կոմպրեսորների համար՝ 21—25 տարի: Դա նշանակում է, որ արտադրական ֆոնդերի ակտիվ մասը ծերանում է և դառնում ոչ միայն սակավ արդյունավետ, այլև պակաս շահութաբեր: Հիմնական ֆոնդերի նորացման ցածր տեմպերի, նրանց անբավարար տեխնիկական վիճակի, մեքենայացման միջոցների վատ օգտագործման

և մի շարք այլ պատճառներով ընկնում է հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության այնպիսի ընդհանրացնող ցուցանիշը, ինչպիսին է ֆոնդահատույցումը:

Այդ ցուցանիշի բարձրացման վրա, անկասկած, էական ներգործություն կունենա ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը համապատասխան՝ ձեռնարկությունների փոխադրումը երկհերթ և եռհերթ աշխատանքի:

Հանրապետության ձեռնարկությունները ու միավորումները մեծ աշխատանք պետք է կատարեն թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման ուղղությամբ: Մեքենաների, սարքավորումների, սարքերի ու ժողովրդական սպառման ապրանքների շատ տեսակների որակը իրենց տեխնիկատնտեսական ցուցանիշներով առայժմ հեռու է լավագույն համաշխարհային ցուցանիշների մակարդակից: Շատ մինիստրություններ, գերատեսչություններ և ձեռնարկություններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում այդ պրոբլեմներին: Կան բազմաթիվ դեպքեր, երբ թողարկվում է անորակ արտադրանք, հետ է վերադարձվում առաքված արտադրանքը, ստացվում են վնասապահանջներ, տնտեսական սանկցիաներ են կիրառվում ստանդարտներից և տեխնիկական պայմաններից շեղումների համար, որոնց հետևանքով գոյանում են ապրանքների ու ոչ գնայուն արտադրանքի կուտակումներ, մեծանում են ծախսված ռեսուրսների անփոխարինելի կորուստները: Այդ կապակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1987 թվականի մարտյան պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց արտադրության տեխնիկական մակարդակի ու արտադրանքի որակի բարձրացման, տեսականու բարելավման ու նորացման, թողարկվող արտադրանքի մրցունակության ապահովման հարցերին:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա հասարակական արտադրության ինտենսիվացման մեծ ու բարդ խնդիրների լուծման ուղղությամբ նշված հիմնական միջոցառումները արտացոլում են գտել 1986—2005 թվականների գիտատեխնիկական առաջադիմության հանրապետական կոմպլեքսային ծրագրում, որ կազմել են գիտությունների ակադեմիան և պետպլանը: Ելնելով մեզ մոտ ստեղծված գիտատեխնիկական մասնագիտացումից, առկա և կանխատեսվող հումքային ու աշխատանքային ռեսուրսներից, ինչպես նաև լիմիտավորող շատ պայմաններից՝ լայնորեն կզարգանան գիտատար, սակավ նյութատար ու էներգատար և ջրատար ճյուղերը:

Հանրապետության առջև ծառացած կարևորագույն սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական առաջնահերթ պրոբլեմ է վառելիքաէներգետիկ համալիրի զարգացումը: Դա հնարավորություն կտա ապահովել ժողովրդական տնտեսության անխափան մատակարարումը՝ սեփական վառելիքաէներգետիկ ռեսուրսների բացակայության, արդյունավետ հիդրոռեսուրսների, այդ թվում և փոքր գետերի էներգետիկ պոտենցիալի սպառման պայմաններում:

Անհրաժեշտ է լուծել բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրը, որը ենթադրում է հանքային և ոչ հանքային հումքի կոմպլեքսային օգտագործում՝ մասնագիտացումը խորացնելու, բոլոր պարունակվող բաղադրամասերը լրիվ վերամշակելու հիման վրա:

Ծրագիրը նախատեսում է մեքենաշինությունն ու մետաղամշակումը զարգացնել առաջավոր գիտատեխնիկական մակարդակով և, մասնավորապես, ստեղծել ծրագրային կառավարում, փոքրածավալ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ և մշակող կենտրոններ ունեցող հաստոցներ, կտրման գոտիում կոմպլեքսային լազերամեխանիկական ներգործություն ունեցող հաստոցներ: Նախատեսվում է ստեղծել փոքրածավալ ավտոմատ էլեկտրոնային սարքեր զանազան տեխնոլոգիական պրոցեսներ վերահսկելու և կառավարելու համար, սկզբունքորեն նոր էլեմենտային բազայի վրա ստեղծել միջին և փոքր արտադրողականություն ունեցող էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ և դրանց հիման վրա՝ կառավարման ավտոմատացված համակարգեր:

Նոր տեխնոլոգիաների ստեղծումն ու արմատավորումը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը կնպաստեն ձեռքի աշխատանքի կիրառման կրճատմանը և ֆիզիկական ծանր աշխատանքի վերացմանը:

Սննդամթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով ծրագիրը նախատեսում է անցում ռացիոնալ հողօգտագործման, ինչպես նաև հողի էռոզիայի դեմ պայքարի, ոչ պիտանի հողերի վրա ջերմոցային տնտեսության ու հիդրոպոնիկայի զարգացման, հողերի ոռոգման ու մելիորացման գիտականորեն հիմնավորված հա-



մակարգերի, գյուղատնտեսական կուլտուրաների մշակման սկզբունքորեն նոր տեխնոլոգիաների ներդրմանը: Հիմնականում տեղական կերային բազայի վրա կստեղծվեն արդյունաբերական տիպի ստացիոնար, ներփակ անասնապահական համալիրներ, կկազմակերպվի սելեկցիոն-տոհմաբուծական աշխատանքը՝ համակողմանիորեն հաշվի առնելով ռեգիոնի պայմանները, կընդլայնվեն տոհմաբուծական գործի և արհեստական բեղմնավորման աշխատանքները:

Հրատապ խնդիրներից է նաև շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմների լուծումը՝ մասնավորապես ջրի սպառման պակասեցումը, կեղտաջրերի և արտանետվածքների մաքրումը, ձեռնարկություններից մթնոլորտ արտամղվող վնասակար նյութերի մաքրման սարքավորումների արդյունավետ աշխատանքի ապահովումը, վերամշակող և լեռնաարդյունահանող արդյունաբերության մեջ արտադրության թափոնները բացառող նոր մեքենաների ու սարքավորումների մշակումը:

Հանրապետությունում առաջնային նշանակություն է տրվում հիմնարար գիտության հետագա զարգացմանը: Գիտությունների ակադեմիան կոչված է կոորդինացնելու գիտական հիմնարկների գործունեությունը, վարելու միասնական գիտատեխնիկական քաղաքականություն:

Ավարտված գիտահետազոտական աշխատանքների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ արագացնելու նպատակով պահանջվում է էապես ամրապնդել գիտությունների ակադեմիայի, գիտական հաստատությունների փորձնական-փորձարարական բազան, դրանք հագեցնել ժամանակակից սարքավորումներով: Առաջնահերթ նշանակություն է ստանում գիտությունների ակադեմիա—արտադրություն համալիրների ստեղծումը՝ ժողովրդատնտեսական կենսական խնդիրները լուծելու համար:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման ռեզերվներից է բուհական գիտությունը, որի պոտենցիալը դեռևս անբավարար է օգտագործվում: Անհրաժեշտ է բարձրացնել գիտահետազոտական աշխատանքների արդյունավետությունը ու որակը, արագացնել ստացված արդյունքների արմատավորումը պրակտիկայում: Պետք է միջոցներ ձեռնարկել՝ ավելի լայնորեն օգտագործելու բարձրագույն դպրոցի գիտական ուժերը հրատապ ժողովրդատնտեսական պրոբլեմները մշակելու և մասնագետների պատրաստման որակը բարելավելու, այդ հիման վրա հանրապետության տընտեսական ու սոցիալական զարգացման գործում բարձրագույն ուսումնական հաստատությունների կոլեկտիվների դերը զգալիորեն բարձրացնելու համար:

Կարևոր է ամրապնդել բարձրագույն ուսումնական հաստատությունների ուղղակի կապերը ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ՝ նպատակ ունենալով արագացնել հրատապ գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների կատարումը: Ընդ որում նախատեսվում է լայնորեն օգտագործել համատեղ աշխատանքի այնպիսի ձևերը, ինչպիսիք են պայմանագրերի կնքումը գիտատեխնիկական համագործակցության մասին, բուհերի ամբիոնների և գիտական ստորաբաժանումների կազմակերպումը ձեռնարկություններում և միավորումներում:

Գիտատեխնիկական պոտենցիալի օգտագործումը, գիտության, տեխնիկայի և արտադրության ինտեգրացումը էապես ու համակողմանիորեն բարելավելու նպատակով խնդիր է դրվում շարունակել աշխատանքը արտադրական, գիտաարտադրական միավորումների կազմակերպական-տնտեսական ձևերը կատարելագործելու ուղղությամբ: Գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային, տեխնոլոգիական կազմակերպությունների ուժերն ու միջոցները կենտրոնացնել այն արմատական հարցերի լուծման վրա, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարային պահանջմունքների բավարարումը:

Հանրապետության գիտական պոտենցիալի զարգացումը հիմնվում է ինչպես սոցիալ-տնտեսական գործոնների, այնպես էլ գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական մշակումների ոլորտի գործունեության ներքին օրինաչափությունների վրա: Այստեղ հաշվի են առնվում աշխատունակ բնակչության նշանակալի ավելացումը և սոցիալական ենթակառուցվածքի ճյուղերում զբաղված մարդկանց թվաքանակի աճի առաջանցիկ տեմպերը՝ նյութական արտադրության ճյուղերի համեմատությամբ:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա հանրային արտադրության ինտենսիվացման գործում մեծ նշանակություն են ստանում կառավարման տնտեսական մեխանիզմի կատարելագործման հարցերը:

Հանրապետությունում ամենուրեք իրականացվում է արմատական վերակառուցում, արդյունաբերության ճյուղերում սկսվել է խոշոր մասշտաբի միջոցառումների իրականացում ձեռնարկությունների ու միավորումների իրավունքներն ընդլայնելու և աշխատանքի վերջնական բարձր արդյունքներ ձեռք բերելու, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը զարգացնելու, պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու, ռեսուրսների ըստ ամենայնի խնայողության համար նրանց պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Կառավարման կատարելագործման կարևորագույն հարցերից մեկը կառավարման և ինֆորմացիայի ավտոմատացված համակարգերի լայն արմատավորումն է: Այս ուղղությամբ և, մասնավորապես, այդ նպատակների համար էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգտագործման հարցերում քիչ բան չի արվել: Սակայն եղած հաշվողական կենտրոնների ցանցը առայժմ օգտագործվում է ոչ արդյունավետորեն, դրանց հատույցը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին: Այդ կապակցությամբ հանրապետությունում աշխատանքներ են կատարվում կոլեկտիվ օգտագործման հաշվողական ցանց ստեղծելու ուղղությամբ:

Հանրապետության սոցիալական ու տնտեսական աճի բնագծերը, որ նշել է ՀԿԿ Կենտկոմի 1987 թվականի մարտյան պլենումը, գլխավորապես հիմնված են հանրային արտադրության զարգացման որակական գործոնների բարձրացման, նրա ինտենսիվացման խորացման, սոցիալական ենթակառուցվածքի ավելի լրիվ զարգացման, ամբողջ ժողովրդական տնտեսության հետևողական կառուցվածքային ու գիտատեխնիկական վերակառուցման վրա:

Կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել կոնկրետ գործերի վրա, հոբելյանական տարվա բոլոր նախանշված տնտեսական ու քաղաքական խնդիրների իրագործման վրա: Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ պետք է ապահովի մեծ Հոկտեմբերի 70-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումը:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Ի. ԾԱՄԵՐՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ՌՍՖՍՀ գիտության վաստակավոր գործիչ**

ՍՄԿԿ **XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՍԱՀՄԱՆԵՑ** մեր սոցիալիստական հասարակության կատարելագործման գլխավոր ուղղությունները: Կուսակցության ծրագրի նոր խմբագրության երկրորդ մասը նվիրված է սոցիալիզմի կատարելագործման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու խնդիրներին: Սոցիալիզմի կատարելագործման կարևորագույն գործոններից մեկը պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի զարգացումն է: Վերջինս, ինչպես նաև սոցիալիզմի կատարելագործումը դիալեկտիկորեն միասնական պրոցես են:

Որո՞նք են սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական, սոցիալական և ինտերնացիոնալ նոր հանրության, գլխավոր գծերն ու բնորոշ առանձնահատկությունները, նրա էությունը: Այն սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի, բոլոր սոցիալիստական ազգերի և ազգությունների միասնությունն է, որ ձևավորվել է աստիճանաբար, սոցիալիզմի կառուցման ընթացքում: Մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, ձևավորման տնտեսական հիմքը սոցիալիստական էկոնոմիկան է՝ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը, որի անխզելի բաղադրամասը բոլոր սովետական հանրապետությունների ժողովրդական տնտեսությունն է: Պատմական նոր հանրության քաղաքական հիմք է ծառայում միասնական սովետական սոցիալիստական բազմազգ համաժողովրդական պետությունը:

Սովետական մարդկանց պատմական նոր հանրությանը բնորոշ է նրանց գաղափարախոսության՝ մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության միասնությունը, որը կյանքի բոլոր ոլորտներում ներդաշնակորեն զուգակցում է ինտերնացիոնալն ու ազգայինը: Դրա վառ արտահայտությունն են սովետական մարդկանց բնավորության ընդհանուր գծերի առկայությունը, իր բովանդակությամբ միասնական բազմազգ սոցիալիստական մշակույթի ձևավորումն ու ծաղկումը:

Սովետական ժողովուրդը՝ որպես մարդկանց պատմական հանրություն, սոցիալիզմի կատարելագործման և կոմունիզմին անցնելու փուլում հասարակական զարգացման օրինաչափ ձևն է, որի առավել բնորոշ որակական հատկանիշներից է ինտերնացիոնալիզմը: Այն դրսևորվում է բազմազան ձևերով և ամենից առաջ արտահայտվում բոլոր ազգությունների սովետական մարդկանց միաձույլ միասնությամբ, կոմունիզմի կառուցման գործում նրանց եղբայրական բարեկամական համագործակցությամբ, ակտիվությամբ ու նախաձեռնության աճով:

Սովետական ժողովրդի ինտերնացիոնալիզմի դրսևորումն են նաև սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդների հետ բարեկամական կապերի, համագործակցության ու փոխօգնության ավելի ու ավելի ամրապնդումը, ազգային ազատագրության և սոցիալական առաջադիմության, ագրեսիվ պատերազմների կանխման, համընդհանուր զինաթափման և մոլորակի վրա կայուն խաղաղության համար ժողովուրդների պայքարին աջակցելը:

դիալեկտիկական փոխներգործությունն ու միասնությունը նպաստում են ինչպես ազգերից յուրաքանչյուրի, այնպես էլ սովետական ողջ ժողովրդի սոցիալիստական մշակույթի չթուլացող վերելքին:

Ինտերնացիոնալի և ազգայինի դիալեկտիկական զուգակցումն ու միասնությունը առավել ընդհանրացված տեսքով դրսևորվում են սովետական ժողովրդի ապրելակերպում: Մարդկանց ապրելակերպը որոշվում է տվյալ հասարակության մեջ տիրող արտադրաեղանակով, նրա սոցիալ-տնտեսական և հասարակական կարգով: Մեր սոցիալիստական ապրելակերպը բնութագրվում է սովետական մարդկանց կենսագործունեության՝ նրանց աշխատանքի, հասարակական-քաղաքական գործունեության, կենցաղի ու ժամանցի առանձնահատկություններով: Ինտերնացիոնալիզմը՝ որպես սովետական ապրելակերպի անքակտելի գիծ տարբեր ազգության մարդկանց ապրելակերպում, չի բացառում ազգային հատկանիշների առկայությունը: Վերջիններս միմյանց չեն հակադրում, այլ զարգանում են ներդաշնակ միասնության և փոխներգործության պայմաններում:

Սոցիալիզմի կատարելագործման պայմաններում սովետական ժողովրդի զարգացման կարևորագույն ցուցանիշ են ինտերնացիոնալի և ազգայինի միասնության հաստատումն ու զարգացումը: Կուսակցության նախանշած խնդիրների իրականացման ընթացքում տեղի է ունենում սովետական ժողովրդի, մարդկանց սոցիալական և ինտերնացիոնալ հանրության միասնության ու համախմբվածության հետագա ամրապնդում: Վերջինս նախ արտահայտվում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության է՛լ ավելի համախմբմամբ, որ տեղի է ունենում սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման հիման վրա: ՍՄԿԿ-ի սոցիալական քաղաքականությունը նպաստում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական մտավորականության դաշնության, նրանց համախմբվածության առավել ամրապնդմանը: Այս պրոցեսի հետ անխզելի կապի մեջ են իրականանում սովետական բոլոր ազգերի ու ազգությունների հետագա զարգացումը, ինտերնացիոնալ հանրության ամրապնդումն ու մերձեցումը: Ազգի սոցիալիստական ծաղկումը ենթադրում է էկոնոմիկայի, քաղաքական կարգի, մշակույթի զարգացման բարձր մակարդակ: Նման ծաղկում չի կարող լինել կապիտալիզմի պայմաններում, որտեղ բանվոր դասակարգի ու մյուս աշխատավորների արտադրած հարստությունները պատկանում են ազգի չնչին փոքրամասնությունը կազմող մի խումբ կապիտալիստների: Ազգերի մերձեցումը տեղի է ունենում նյութական և հոգևոր արտադրության բոլոր ոլորտներում, պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ: Սերտ բարեկամական շփման, համագործակցության և փոխօգնության պրոցեսում նրանք փոխհարստանում են, փոխանակում են միմյանց դրական փորձը, առաջադիմական ավանդույթները և այլն: Սա հատկապես վառ կերպով դրսևորվում է ժողովուրդների մշակութային կյանքում:

Սոցիալիստական ազգերի և ազգությունների աննախընթաց վերելքը հնարավոր դարձավ մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակից հետո միայն: Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, երբ տակավին նոր էր իրականացվում հին հասարակության ու հին ազգերի արմատական վերափոխումը, երբ դեռևս վերջ չէր տրվել շատ ժողովուրդների հետամնացությանն ու նրանց միջև տիրող փաստական անհավասարությանը, բացակայում էր նաև ազգերի հետևողական վերընթացը: Բայց արդեն այդ ժամանակ՝ սոցիալիստական շինարարության պրոցեսում, ազգային հարաբերությունների զարգացման մեջ ծագում են երկու միտումներ՝ ազգերի ծաղկումն ու մերձեցումը, որոնք հետագայում վերածվում են օրինաչափության:

Սոցիալիզմի կատարելագործման շրջանում ազգերի, ազգային հարաբերությունների զարգացումը հանգեցնում է ազգերի ծաղկման ու մերձեցման ավելի բարձր մակարդակի, որին հասնելու խնդրում կարևորագույն դեր է խաղում այն հանգամանքը, որ ավարտվում է պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորումը: Վերջինս չափազանց լուրջ ազդեցություն է գործում ազգերի ու ազգությունների հոգևոր կյանքի հարստացման, նրանց ստեղծագործական ակտիվության խթանման վրա: Ազգերի, ազգությունների միջև որքան ավելի խորապես են ծավալվում համագործակցությունն ու փոխօգնությունը, այնքան ավելի շատ են նրանք փոխհարստանում՝ միմյանցից ընդօրինակելով արտադրաոլորտում, մշակույթում, կենցա-



ղում և այլուր եղած ամենայն լավագույնը, առաջավորը: Այսպես են բազմապատկվում բոլոր ազգերի ու ազգությունների համար ընդհանուր ինտերնացիոնալ գծերը՝ իրենց կենսագործունեության բոլոր ասպարեզներում հոգևոր նկարագրում և վարքում: Միաժամանակ առավել արագ է ծավալվում նրանց համակողմանի ծաղկումը:

Սովետական ազգերի կյանքի նյութական հիմքի՝ էկոնոմիկաների, աճի տեմպերը վերջին քառորդ դարում հետևյալ պատկերն են ներկայացնում: ՍՍՀՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացել է 4,8 անգամ (տե՛ս СССР в цифрах в 1985 г. М., 1986, с. 88): Ընդ որում մի շարք հանրապետություններում այդ աճի տեմպերը եղել են ավելի բարձր, օրինակ, Հայկական ՍՍՀ-ում՝ ավելի քան 7,5 անգամ, Ադրբեջանում՝ 5,7, Վրաստանում՝ 5,3 անգամից ավելի (տե՛ս նույն տեղը, էջ 91): Գյուղատնտեսության 1981—1985 թթ. համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալի աճի տեմպերը, 1961—1965 թթ. համեմատ, երկրում կազմել են 158 տոկոս: ՍՍՀՄ և յուրաքանչյուր սովետական հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար բնորոշ է դինամիկ աճը: Ընդ որում յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան զբաղեցնում է կարևոր տեղ աշխատանքի հասարակական բաժանման մեջ, հարաճուն ավանդ է ներդնում ընդհանուր միութենական էկոնոմիկայի զարգացման գործում:

Հաջողությամբ է իրականացվում լենինյան ազգային քաղաքականության կարևորագույն խնդիրներից մեկը՝ բոլոր հանրապետությունների էկոնոմիկաների մակարդակների հավասարեցումը: ՍՍՀՄ բոլոր հանրապետություններում ներկայումս ձեռք են բերվել զգալի հաջողություններ ժողովրդական տնտեսության կառավարման մեխանիզմի վերակառուցման, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման ասպարեզում:

Սովետական եղբայր ժողովուրդների բարգավաճման բարձր մակարդակի համոզիչ վկայությունն է նրանց նյութական ապահովվածության անշեղ աճը: Դրա արտահայտությունն է մասնավորապես բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների աշխատավարձի աճը: Ավելի է բարելավվում նրանց ցույց տրվող բժշկական օգնությունը: Մեր երկիրն աշխարհում առաջին տեղն է գրավում բժիշկներով բնակչության ապահովվածությամբ: ՍՍՀՄ-ում իրականացվում է վիթխարի բնակարանային շինարարություն: ՍՍՀՄ ժողովուրդների կրթության և մշակույթի զարգացման արդի մակարդակը վկայում է, որ մեր հասարակության զարգացման արդի փուլում հիմնականում հավասարվել է սովետական բոլոր ազգերի ու ազգությունների կրթական մակարդակը:

Մեր մարդկանց մեջ ստեղծվել ու հաստատվել են այնպիսի հիանալի գծեր, ինչպիսիք են՝ նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին և կոմունիզմի գործին, սովետական հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, բարձր հասարակական-քաղաքական աշխատանքային ակտիվությունը, անհաշտելիությունը շահագործման և կեղեքման, նացիոնալիզմի, շովինիզմի, ռասիզմի բոլոր դրսևորումների նկատմամբ, դասակարգային համերաշխությունը բոլոր երկրների աշխատավորների հետ: ՍՄԿԿ ծրագրում նշվում է, որ մեր երկրում «ստեղծվել է սոցիալական արդարության, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության վրա հիմնված սոցիալիստական ապրելակերպ, որը աշխատավոր մարդուն վստահություն է տալիս ապագայի հանդեպ, նրան հոգեպես և բարոյապես վեհացնում որպես հասարակական նոր հարաբերությունների, սեփական ճակատագրի կերտողի»:

Ներկայումս սովետական ազգերի, ազգությունների միջև առկա սոցիալ-դասակարգային կառուցվածքում չկան սկզբունքային, որակական տարբերություններ: Նրանք բոլորն էլ ունեն միատեսակ սոցիալ-դասակարգային կառուցվածք, իսկ զանազան ազգերում, ազգություններում այս կամ այն դասակարգի, սոցիալական խմբի տեսակարար կշռում գոյություն ունեցող որոշ տարբերությունները չեն բացառում այդ կառուցվածքի որակական միասնությունը:

Մեր սոցիալիստական հասարակությունում ազգերի ու ազգությունների զարգացման բարձր մակարդակի քաղաքական հիմք են ծառայում սովետական համաժողովրդական բազմազգ պետությունը և հասարակական կազմակերպությունները, որոնք կազմում են նրա քաղաքական սիստեմը: Հասարակության քաղաքական սիստեմի, պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը, նրա ղեկավար և ուղղություն տվող ուժը կոմունիստական կուսակցությունն է:

ՍՍՀՄ-ը, որպես միասնական միութենական բազմազգ պետություն, մարմնավորում է բոլոր ազգերի ու ազգությունների, սովետական ողջ ժողովրդի պետական

միասնությունը: Սովետական յուրաքանչյուր ազգի ու ազգության անմիջական քաղաքական հիմքը՝ նրանց ազգային սովետական պետականությունը, հանդիսանում է ընդհանուր միութենական պետականության անխզելի օղակը: Սովետական ազգերի և ազգությունների ընդհանուր միութենական և ազգային պետականության միասնությունը իր վառ արտահայտությունն է գտնում նրանց աներեր բարեկամության և համախմբվածության մեջ: Իր հերթին ժողովուրդների բարեկամությունը սովետական բազմազգ պետության ամրության ու հզորության աղբյուրն է:

Համաժողովրդական բազմազգ սովետական պետության՝ ՍՍՀ Միության մեջ սովետական բոլոր ազգերի ու ազգությունների, միութենական ու ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի ու օկրուգների պետական միասնությունն իր արտացոլումն է գտնում նաև տերիտորիայի՝ որպես ազգի և ազգության հիմնական հատկանիշներից մեկի, ընդհանրության մեջ: Այժմ այդ ընդհանրությունը հանդես է գալիս որպես սովետական ժողովրդի տերիտորիալ ընդհանրության օրգանապես անխզելի մաս, որը ներդաշնակ միասնության մեջ է գտնվում նրա հետ: Սոցիալիզմի արդի փուլում, պատմական նոր հանրության գոյության և պրոլետարիատի դիկտատուրան համաժողովրդական պետության վերածելու պայմաններում, սովետական ժողովրդի ընդհանուր միութենական տերիտորիալ միասնության հետ յուրաքանչյուր ազգի ու ազգության տերիտորիալ ընդհանրության միասնությունը ձեռք է բերում ավելի խոր, որակապես նոր բնույթ:

Սոցիալիստական ազգերի ու ազգությունների բարձր հասունության գաղափարախոսական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է՝ ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության գաղափարախոսությունը: Արդի պայմաններում սովետական ազգերի ու ազգությունների այդ հիմքի համար բնորոշ է, նախ, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության մարքս-լենինյան գաղափարախոսության լիակատար հաղթանակը: Այն արդեն տիրապետող դարձավ 30-ական թվականների կեսերին՝ սոցիալիստական հասարակության հիմքերի կառուցման շնորհիվ: Բայց սոցիալիզմի հետագա ծավալման շնորհիվ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության գաղափարներն ու սկզբունքները բանվոր դասակարգի գաղափարախոսությունից վերածվում են մեր հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, սովետական ողջ ժողովրդի գաղափարախոսության: Մեր սոցիալիստական հասարակության մեջ արդեն չկան սոցիալական, դասակարգային այնպիսի արմատներ, որոնք ծնեն ու սնեն նացիոնալիզմի ու շովինիզմի բուրժուական գաղափարախոսություն: Մեր հասարակության առանձին շրջաններում, ճիշտ է, դեռևս գոյություն ունեն նացիոնալիզմի և շովինիզմի զանազան դրսևորումներ ու վերապրուկներ, բայց դրանց կրողները քաղաքականապես ոչ հասուն անձինք են, այլ ոչ թե ինչ-որ սոցիալական խմբեր կամ ազգեր, ազգություններ:

Արտասահմանում գործող հակակոմունիստների շարքերում կան նաև Սովետական Միության տարբեր ժողովուրդների ներկայացուցիչներ, մեր երկրի նախկին քաղաքացիներ, որոնք զրպարտչական պրոպագանդա են վարում ՍՍՀՄ-ի դեմ: Նրանց թվում են նաև դաշնակցության գաղափարախոսները, որոնք չեն արտահայտում մեր հասարակության որևէ սոցիալական խմբի շահերը և հայացքները:

Մարքսիզմ-լենինիզմի լիակատար հաղթանակն իր արտահայտությունն է գտել սովետական ազգերի ու ազգությունների հոգևոր նկարագրում:

Սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության, կազմավորման պատմական նշանակությունն այն է, որ նրա առաջացմամբ ու զարգացմամբ պայմանավորված են սովետական պետության տնտեսական, քաղաքական և պաշտպանական պոտենցիալի հետագա մեծացումը, նրա միջազգային դիրքերի ամրապնդումը, դրանով իսկ նաև սոցիալիստական երկրների ընկերակցության և համաշխարհային սոցիալական առաջադիմության ուժեղացումը:

---

# ՌԵԶԵՐՎՆԵՐԸ՝ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ծ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
**ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար**

ԱՊԱՐԱՆԻ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԱԾՔԻ զգալի մասը ծովի մակերեվույթից 2000 մետր և ավելի բարձրության վրա է: Հողատարածությունները սահմանափակ են, քարքարոտ, պատկերավոր ասած՝ հողերը դժվարին են: Գարունն ու ամառը կարճատև են, տեղումների միջին քանակությունը պակաս է նորմայից, իսկ բույսերի վեգետացիայի շրջանում տեղումներ գրեթե չեն լինում: Ձմեռը երկարատև ու խստաշունչ է: Այս պայմաններում առանձնակի կարևորություն է ստանում արտադրության ինտենսիվ զարգացման, նրա աճի ներքին հնարավորությունների և ռեզերվների հայտնաբերման ու արդյունավետ օգտագործման խնդիրը:

Սակավահողության և չբարելավված հողատեսքերի առկայության պայմաններում մեզ համար անչափ կարևոր և անփոխարինելի ռեզերվ են նոր հողերի յուրացումը և բարելավումը, նոր կուլտուրաների և սորտերի լայն արմատավորումը, ոռոգման ջրի լրացուցիչ պաշարների ստեղծումը և այս ամենի հիման վրա՝ բերքատվության բարձրացումը: Պակաս կարևոր չեն մեքենայական աշխատանքի, առաջադիմական տեխնոլոգիաների կիրառումը ինչպես դաշտավարությունում, այնպես էլ անասնապահությունում: Շրջանի էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման խնդիրն իրականացնելիս՝ մենք ստիպված ենք լինում բախվել այն իրողության հետ, որ տարիներ շարունակ առանձին տնտեսությունների ղեկավարներ, որդեգրելով եղածով յոլա գնալու և էքստենսիվ զարգացման հոգեբանությունը, արդյունավետորեն չեն օգտագործել իրենց տրամադրության տակ եղած հնարավորությունները, անտեսել են տնտեսական աճի ռեզերվները: Հարկ է լինում մարդկանց համոզել, որ չբացահայտված ռեզերվներ և հնարավորություններ կան արտադրության ամեն մի ճյուղում, յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում, նրանց սովորեցնել՝ աշխատել նորովի, դաստիարակել տնտեսավարման նոր մտածողությամբ, համակել ներդրված արտադրության միջոցներից անհրաժեշտ հատույց ստանալու ձգտումով:

Այո՛, շրջանի հողային տարածությունները սահմանափակ են: Հետևաբար, մեզ համար հողի արդյունավետ օգտագործումը բացառիկ կարևոր, առաջնահերթ սոցիալ-տնտեսական խնդիր է: Դրա շուրջ կուսշրջկոմում շատ ենք խորհել, ծանր ու թեթև արել հարցի լուծման ուղիներն ու հնարավորությունները: Ընդ որում այդ գործին մասնակից ենք դարձրել հանրապետության համապատասխան գիտահետազոտական ինստիտուտների առաջատար մասնագետներին: Մեր ուսումնասիրություններից պարզվել է, որ ինչպես լքված հողերի վերականգնման, այնպես էլ մելիորացման, ճահճացած ու գերխոնավ հողերի չորացման, ցեխերի հուների կարգավորման, հակաէրոզային աշխատանքի միջոցով հնարավոր կլինի վարելահողերն ընդարձակել և հասցնել 15 հազար հեկտարի: Եվ շուտով «Հայհողպետնախագիծ» ինստիտուտի մշակած հողօգտագործման սխեմայով նախատեսվեց յուրացնել 3.770 հեկտար նոր հողատարածություն:

Կուսշրջկոմին առընթեր տնտեսագիտական խորհրդի ուսումնասիրությունը ցույց է տվել, որ շրջանի պայմաններում արտադրական նորմալ գործունեություն ծավալելու համար մեր տնտեսությունները պետք է ունենան շուրջ 500-ական հեկտար վարելահող: Ինչո՞վ է հիմնավորվում դա: Նախ՝ հիմնական կուլտուրաներից տարեկան

կազմակերպման, ջրի արդյունավետ օգտագործման հարցը: Կոմունիստները լրջորեն մտահոգված էին տնտեսությունում տիրող իրավիճակով: Այստեղ ղեկավարները, միջին օղակի կադրերը անտնտեսվար, անփույթ վերաբերմունք էին ցուցաբերում ոռոգման գործի նկատմամբ: Կուսակցական ժողովը սկզբունքային գնահատական տվեց բյուրոյի քարտուղար Ժ. Ավետիսյանի ու կոլտնտեսության վարչության նախագահ Ե. Արշակյանի անբավարար գործունեությանը և նրանց ենթարկեց կուսակցական պատասխանատվության: Տույժեր ստացան նաև այդ գործի համար պատասխանատու մյուս անձինք:

Կուսշրջկոմը, ագրոարդյունաբերական շրջմիավորումը, սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես բարձրացնում են գյուղատնտեսական և ջրատնտեսական կազմակերպությունների, ոռոգման գործով զբաղվող աշխատողների պատասխանատվությունը ջրի խնայողաբար և ռացիոնալ օգտագործման համար: Այդ հետևողականությունը լավ արդյունք է տալիս, այժմ արդեն տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները չեն անտեսում գիշերային ջրման նշանակությունը, լավ են գիտակցում, որ դա օգնում է մեղմացնելու ջրօգտագործման լարված գրաֆիկը և որ ոռոգման ցանցերի թողունակությունն ու պոմպակայանների աշխատանքի ռեժիմը նախատեսված են վեգետացիոն ողջ ժամանակաշրջանում՝ թե՛ գիշերը, թե՛ ցերեկը գործելու համար:

Տեղերում սկսել են մեծ ուշադրություն նվիրել ջրվորների ընտրության, նրանց նյութական շահագրգռության բարձրացման, ոռոգման տեխնիկայի կատարելագործման հարցերին: Ոռոգելի հողամասերը հատկացվում են ինքնուրույն ստորաբաժանումներին, մարդիկ, աշխատելով կապալային եղանակով, սկսել են ավելի հոգատարությամբ, տիրոջ պես վարվել հողի ու ջրի հետ: Եվ բնավ պատահական չէ, որ ջրօգտագործման գործակիցը հասել է 85 տոկոսի:

Ձեռնարկված այս միջոցները ցանկալի արդյունք են տվել: Շրջանում կոշտ և հյութալի կերերի արտադրությունը տարեկան աճում է 10 հազար տոննայով: Միայն ջրարբիացումը հնարավորություն տվեց առվույտի ցանքատարածություններն ընդարձակել 1.500, կարտոֆիլինը՝ 200 հեկտարով, ներդնել նոր կուլտուրաներ՝ կերի ճակնդեղ, հատիկաընդեղեն, արևածաղիկ:

Ոռոգումը փոխել է նաև տնամերձ հողամասերի դեմքը: Կոլտնտեսականներն ու բանվոր-ծառայողներն անհատական բանջարանոցներում աճեցնում են նոր կուլտուրաներ, հիմնում պտղատու այգիներ: Այսպիսով, մեծանում է ջրի օգտագործման ոչ միայն պահանջարկը, այլև նրա սոցիալական դերի ըմբռնումը: Մարդիկ ամուր կապվում են իրենց բնօրրանին, նպաստում նրա բարգավաճմանը:

Ռեզերվների հայտնաբերման և արդյունավետ օգտագործման շատ օրինակներ կարելի է բերել շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղի՝ անասնապահության բնագավառից: Երկար տարիներ Երնջատափի սովխոզի ղեկավարությունը, կուսկազմակերպությունը քննադատվում էին տևականորեն հետ մնալու, եղած հնարավորություններն ու ռեզերվները չօգտագործելու համար: Եվ ահա անցած տարի իրենց ձեռք բերած ցուցանիշներով երնջատափցիներն ընդհուպ մոտեցան շրջանի առաջավոր տնտեսությունների մակարդակին: Եթե ընդամենը երեք տարի առաջ այստեղ մեկ կովի կաթնատվությունը չէր անցնում 1.300 կիլոգրամից, ապա այժմ այն կազմում է 3.000 կիլոգրամ: Տնտեսությունը կատարում է անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի պլանները: Ինչո՞վ բացատրել այս շեշտակի վերելքը, չէ՞ որ նույն մարդիկ են, նույն հողն ու ջուրը, նույն հնարավորությունները: Փոխվել է միայն մի բան՝ մարդկանց վերաբերմունքը աշխատանքի, իրենց ամենօրյա պարտականությունների կատարման նկատմամբ:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո շրջկոմի բյուրոն քննարկեց Երնջատափ գյուղի սոցիալ-տնտեսական կոմպլեքսային զարգացման հարցը, ընդունեց կոնկրետ որոշում, կատարվեցին կադրային փոփոխություններ: Սկզբնական կուսկազմակերպությունն ու դիրեկցիան, ճիշտ հետևություններ անելով ստեղծված իրավիճակից, իրավացիորեն առաջին պլան մղեցին ինտենսիվ գործոնները, աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերն ու նոր տեխնոլոգիաները, խստորեն հետևեցին ագրոտեխնիկական կանոնների կիրառմանը: Ամենօրյա կենդանի կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանք տարվեց աշխատավորության շրջանում: Մելիորացիայի շնորհիվ շրջանառության մեջ դրվեցին 130 հեկտար նոր հողեր, ընդլայնվեց ոռոգման ցանցը, ներդրվեցին կերային նոր կուլտուրաներ, բարելավվեց զոոանասնաբուժական ծառայության դրվածքը: Եվ, ամենակարևորը, ամրապնդվեց



երնջատափցիների հավատը սեփական ուժերի ու հնարավորությունների նկատմամբ:

Վերակառուցման ու արագացման արդի պայմաններում լավ աշխատանք է պահանջվում բոլորից և յուրաքանչյուրից, ամեն մի տնտեսություն պետք է աշխատի հատույցով, օգուտով: Հաշվի առնելով այս հանգամանքը՝ կուսշրջկոմը ուշադրության կենտրոնում է պահում հետ մնացող տնտեսություններում գործերի վիճակը շտկելու խնդիրը, հետևողականորեն բարձրացնում էկոնոմիկայի, սոցիալական զարգացման գործում կուսկազմակերպությունների ու ղեկավարների, բոլոր կոմունիստների պատասխանատվությունը: Վերջերս շրջկոմ էինք հրավիրել Շրջկենտրոնի և Լուսագյուղի սովխոզների ղեկավարներին: Այս երկու տնտեսությունում էլ ցածր են արտադրության աճի տեմպերը և, ընդհանրապես, շատ խնդիրներ չեն լուծվում: Հարկ եղավ նրանց ծանոթացնել Միության առաջավոր տնտեսությունների, հատկապես Կալուգայի մարզի Օկտյաբրսկի սովխոզի փորձին: Օկտյաբրսկի սովխոզի ղեկավարները գտել են գործերի բարելավման գործուն միջոցներ և ուղիներ, իսկ մեր շրջանի վերը նշված և մի քանի այլ տնտեսությունների ղեկավարներ ու կուսկազմակերպություններ դեռևս «որոնումների» մեջ են: Ո՞րն է պատճառը: Ուղղակի ասենք՝ պակասում է ձեռնհասությունը: Շրջկոմում նրանց բացատրեցինք, որ քննադատությունը նրա համար չէ, որ թերությունների մասին խոսվի, արձանագրվի, իսկ բարձրացված հարցերը չլուծվեն, որ ղեկավարի ձեռնհասությունն այժմ ենթադրում է ոչ միայն իրազեկություն, գիտելիքների որոշակի պաշար, այն այժմ ձեռք է բերել նոր իմաստ: Կարելի՞ է, արդյոք, պատկերացնել ժամանակակից ղեկավար՝ առանց այնպիսի հատկանիշների, ինչպիսիք են նախաձեռնողականությունը, համարձակությունը, պատասխանատվությունն ստանձնելը ու պատրաստակամությունը, հարցերը պետականորեն լուծելու կարողությունը: Կարծում եմ, որ նման անհատական զրույցներն անհետևանք չեն անցնի:

Անասնապահության մեջ մեր կարևորագույն ռեզերվներից մեկը մեքենայացման աստիճանի բարձրացումն է: Իսկ դրան հասնելու համար անհրաժեշտ է ունենալ համապատասխան նախադրյալներ: Կերաբաշխման կամ, ասենք, կթի մեքենայացումն անհնար է առանց ժամանակակից անասնապահական շենքերի: Ուրեմն, հարկավոր է հարցը լուծել հիմնովին, կոմպլեքսային ձևով: Վերջին տարիներս շրջանի Ափնա, Վարդենուտ, Թթուջուր, Ծաղկաշեն, Մռավյան, Արայի և այլ գյուղերում շահագործման են հանձնվել անասնապահական նոր համալիրներ և օբյեկտներ, ընթացքի մեջ է նորերի շինարարությունը: Եվ շատ ֆերմաներում աշխատատար պրոցեսները հիմնականում մեքենայացված են: Այս հարցը ևս ունի ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական կարևոր նշանակություն: Մարդիկ սիրով են գնում ֆերմա, երիտասարդները այլևս չեն խուսափում այնտեղ աշխատելուց: Մեկ բնորոշ օրինակ: Ծենավանի կաթնապրանքային ֆերման և արդյունաբերական մասնաճյուղը իրար մոտ են: Ե՛վ իրենց արտաքին տեսքով, բակերի մաքրությամբ, և՛ ստեղծված պայմաններով այս օբյեկտները քիչ են զանազանվում իրարից: Երկու տեղում էլ աշխատում են սպիտակ խալաթներով ջահել աղջիկներ: Տարբերությունը միայն այն է, որ կթվորուհիներն ավելի լավ են վարձատրվում և իրենց աշխատանքի ու հանգստի պայմաններից էլ դժգոհ չեն: Ահա մենք ձգտում ենք, որ անասնապահությունը մյուս տնտեսություններում նույնպես դրվի ինդուստրիալ հիմքի վրա: Մարդկանց արդյունավետ աշխատանքի համար ստեղծվեն բոլոր նախադրյալները: Մեր ժամանակներում չի կարելի անտեսել գյուղատնտեսության մեջ աշխատող պատանու և աղջկա այսօրվա, առավել ևս վաղվա պահանջները:

Անասնապահությունում ծախսումների կրճատումը, կերի ռացիոնալ օգտագործումը, ցեղի բարելավումը ամենախոշոր ռեզերվներն են: Բավական է ասել, որ միայն կերի որակի բարելավման, դրա պահպանության և ռացիոնալ օգտագործման, կորուստների կանխման միջոցով հաջողվել է անասնապահության արդյունավետությունը բարձրացնել 10—15 տոկոսով: Ծաղկաշենի կոլտնտեսությունը, օրինակ, միայն բարձր քաշանի անասուններ վաճառելու համար տարեկան ստանում է 90—100 հազար ռուբլու հավելավճար: Ահա ռեզերվը խելացիորեն օգտագործելու արդյունքը, շահութաբերության ակունքը:

Սակայն արտադրանքի որակի բարելավման խնդիրն առանձին տնտեսություններում չի լուծվում: Եթե շրջանի առաջավոր տնտեսությունների մթերակայան հանձնած խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը կազմում է 350—400 կիլոգրամ, ապա Մուլքիի, Ջորագլխի սովխոզներում այն տատանվում է 290—300 կիլոգրամի սահմաններում: Նրանք զգալի վնաս են կրում նաև ցածրորակ, ոչ դասային կաթ հանձնելու պատճառով: Հետևաբար, դեռևս կան չօգտագործվող ռեզերվ-

ներ, որոնց գործադրմամբ այդ տնտեսություններում և ընդհանուր առմամբ շրջանում դրությունն էապես կփոխվի:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, պարենային ծրագիրը կատարելու և կուսակցության նոր կանխագծումներն ու պահանջները իրագործելու համար կուսակցական մարմիններից և կազմակերպություններից պահանջվում է խորացնել ու ամրապնդել դրական միտումները, չգոհանալ ձեռք բերածով, որոնել ու գտնել արտադրության աճի նոր ռեզերվներ և հնարավորություններ: Իսկ մեր շրջանում դրանք շատ են, հեռանկարի առումով՝ չափազանց կարևոր: Ասածս հիմնավորեմ կոնկրետ օրինակներով: Արագած լեռան լանջերին մենք ունենք բավական ընդարձակ հողատարածություններ, որոնց տնտեսական արդյունավետությունը շատ ցածր է: Արտադրության շահերը պահանջում են այստեղ կատարել գիտականորեն հիմնավորված ագրոանտառամելիորացման աշխատանքներ: Նույնը կարելի է ասել նաև Միխանայի, Ծաղկունյաց և Արայի լեռնալանջերի մասին: Մեր խնդրանքով «Հայհողպետնախագիծ» և «Հայպետջրնախագիծ» ինստիտուտներն արդեն ուսումնասիրել են այդ հարցերը: Առաջիկա տարիներին մենք արդեն կարող ենք կոնկրետ արդյունքներ ակնկալել:

Շրջանի տարածքում ջրամբարներ ու ջրհան կայաններ կառուցելու միջոցով կարելի է զգալի քանակությամբ ջուր կուտակել և օգտագործել ոռոգման նպատակով: Օրինակ, ուսումնասիրություններից պարզվել է, որ եթե Ջորագլխի մերձակայքում կառուցվի 2 մլն խմ տարողությամբ ջրամբար, ապա հնարավոր կլինի ինքնահոս եղանակով ոռոգելի դարձնել շուրջ 800 հեկտար հողեր: Հարց ենք առաջ քաշել Հարթավանի ջրհան կայանի հզորությունը մեծացնելու, Նիգավանի մերձակայքում 3—3,5 մլն խմ տարողությամբ ջրամբար և Երնջատափի ջրհան կայանի երկրորդ հերթը կառուցելու համար: Եթե այդ ամենը մեզ հաջողվի, ապա ջրով կապահովվի 12 տնտեսությունների ավելի քան 2.500 հեկտար անջրդի հողատարածություն:

Շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման շահերից ելնելով՝ սեփական նախաձեռնությամբ մտադիր ենք 2.500 գլուխ կովի համար կառուցել կաթնային համալիրներ, մեքենայացված ֆերմաներ ու գոմեր, 15 հազար գլխի համար՝ տիպային ոչխարանոցներ, խոզաբուծական և թռչնաբուծական խոշոր ֆերմաներ կամ համալիրներ, ստեղծել ջերմոցային հզոր տնտեսություն, գործարանային մասնաճյուղեր բացել մի շարք գյուղերում, որտեղ հնարավոր չէ աշխատուժը ամբողջությամբ ընդգրկել գյուղատնտեսության մեջ:

Դժվարին խնդիրներ են սպասվում շրջանի աշխատավորական կոլեկտիվներին, կուսկազմակերպություններին, սակայն ստեղծված նախադրյալները, ամենուրեք հաստատված բարոյահոգեբանական առողջ մթնոլորտը, կոմունիստների, արտադրության բոլոր մարդկանց հասարակական-քաղաքական բարձր ակտիվությունը հույսեր են ներշնչում, որ նախատեսված միջոցառումները կյանքի կկոչվեն, հաջողությամբ կլուծվեն սոցիալ-տնտեսական զարգացման արագացման մեր խնդիրները: Այդ իրողությունը լավ են գիտակցում շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները: Նրանք լուրջ հետևություններ են անում ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի որոշումներից, և ամեն ոք ձգտում է վերակառուցել իր գործունեությունը, պայքարել նորի և առաջավորի համար: Դրա վկայությունը ընթացիկ տարվա հաջող մեկնարկն է: Շրջանը ժամկետից շուտ կատարեց կաթի, մսի և բրդի արտադրության ու վաճառքի առաջին եռամսյակի առաջադրանքները և նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ զգալի աճ ապահովեց: Վերանայելով առկա հնարավորություններն ու ռեզերվները՝ շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները հանդես են եկել հնգամյակը չորս տարում կատարելու, մեծ Հոկտեմբերի պանծալի հոբելյանը արժանավայել դիմավորելու հայրենասիրական նախաձեռնությամբ: Ստանձնած պարտավորությունները ռեալ են, հիմնավորված և բխում են մեր տնտեսական աճի պոտենցիալից:



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**
**Ռ. ՎԱԼԵՍՅԱՆ**

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ** բարեկեցության բարձրացման կարևոր նախապայմանը լայն սպառման ապրանքների հարանուն պահանջմունքների ավելի լրիվ բավարարումն է: Դա ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած սոցիալական ծրագրի հաջող լուծման գրավականն է:

Վերջին տարիներին մեր հանրապետությունում որոշակի տեղաշարժեր են կատարվել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կառուցվածքում, փոքր-ինչ բարելավվել է դրանց որակը և ընդլայնվել տեսականին: Սակայն վերլուծությունը ցույց է տալիս, որ մի շարք ապրանքներ թողարկվում են դեռևս ոչ բավարար քանակությամբ, իսկ բազմաթիվ այլ արտադրատեսակների արտադրությունը եղած պահանջարկից ավելի է և սպառվում է ոչ լրիվ: Նման վիճակը հիմնականում բացատրվում է որոշակի ապրանքներով շուկայի գերհագեցմամբ և պահանջարկի նվազմամբ, բազմաթիվ արտադրատեսակների համեմատաբար բարձր գներով, ինչպես նաև ներմուծվողների նկատմամբ դրանց մրցունակ չլինելով:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հաշվեկշռված զարգացման կարևոր պայմանը նրա կազմակերպման ու պլանավորման ճյուղային և տերիտորիալ սկզբունքների նպատակահարմար զուգորդումն է:

Ներկայումս զանգվածային պահանջարկ վայելող ապրանքներ են թողարկում 22 միութենական, 8 միութենական-հանրապետական և 2 հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների ենթակայության ձեռնարկություններ: Ճյուղային սկզբունքն, անշուշտ, ապահովում է արտադրանքի թողարկման ծավալների աճը, սակայն այն առաջացնում է նաև որոշակի անհամամասնություններ՝ կապված ժողովրդական սպառման ապրանքների արտադրության տվյալ մեթոդի, ինչպես նաև դրանց պահանջարկի ձևավորման տերիտորիալ բնույթի հետ: Դա վերջինիս և ճյուղային շահերի ռացիոնալ զուգորդումը խախտելու հետևանք է:

«Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և ծառայությունների համակարգի զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագրով», ինչպես նաև «Տեղական արդյունաբերության հետագա զարգացման 1986—1990 թթ. և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված է արագացնել մասնագիտացված արտադրությունների կատարելագործումը՝ արդի տեխնիկայի ու տեխնոլոգիայի լայն կիրառման հիման վրա, ընդլայնել թողարկվող արտադրանքի տեսականին և բարձրացնել որակը, ձևավորել բնակչության խելամիտ պահանջմունքները: Բնական է, որ ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի զարգացման միակ ուղին արտադրության ինտենսիվացումն է, դրա կազմակերպման ու կառավարման բարելավումը, արտադրական կարողությունների արդյունավետ օգտագործումը, գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, հումքի, նյութերի, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը: Ծրագրի կարևոր՝ բաղկացուցիչ մասը արտադրանքի նորացումը ժամանակին ապահովելն է՝ նորաձևության պահանջներին և բնակչության պահանջարկի փոփոխություններին համապատասխան: Ինչպես ՍՄԿԿ XXVII համագու-

սի ձեռնարկություններ ստեղծելու նպատակահարմարությունը կապված է այն բանի հետ, որ դրանք քիչ կապիտալ ներդրումներ են պահանջում:

Ներկայումս տեղական արդյունաբերության համար պրոֆիլային հանդիսացող բազմաթիվ ոչ բարդ արտադրատեսակների պակասություն է զգացվում: Դրանց արտադրությունը խոշոր միավորումներում կենտրոնացնելու պատճառով, որոնց թողարկման համար այդտեղ համեմատաբար ցածրարտադրողական սարքավորումներ են օգտագործվում, արտադրանքի որակը վատացել է: Խոշոր ձեռնարկություններում արտադրվող ժողովրդական սպառման ապրանքների անվանացանկի կրճատումը և դրանց մեծ մասի արտադրության կենտրոնացումը մասնագիտացված ոչ մեծ օբյեկտներում նպաստում են արտադրանքի որակի բարձրացմանը, նպատակահարմար դարձնում այդպիսի ձեռնարկությունների ստեղծումը: Դա ունի նաև դրական այլ կողմեր՝ կապված այդ օբյեկտների տեղաբաշխման հետ: Հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների զարգացման կուրսին համապատասխան, իրենց չափերով ոչ մեծ ձեռնարկությունները անհրաժեշտ է տեղաբաշխել հենց այդ շրջաններում: Արտադրության տերիտորիալ համակենտրոնացման այդ ձևը նպաստում է սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակի տարբերությունների հաղթահարմանը և լեռնային շրջաններում արտադրական-տեխնիկական պոտենցիալի ուժեղացմանը, անձնական ու օժանդակ տնտեսություններում զբաղված մարդկանց ընդգրկմանը հանրային արտադրության մեջ, այդ շրջաններից բնակչության արտահոսքի նվազեցմանը, խոշոր քաղաքներում արտադրության կենտրոնացման չափերի կարգավորմանը, դրանց արտադրական կառուցվածքի բեռնաթափմանը:

Այսօրվա դրությամբ գործում է թեթև արդյունաբերության մինիստրության միավորումների ու ձեռնարկությունների 124 և տեղական արդյունաբերության մինիստրության 37 մասնաճյուղ: Մանր ձեռնարկությունների ստեղծմանն ու տարակենտրոնացված տեղաբաշխմանն ուղղված միջոցառումների իրագործմանը զուգընթաց, անհրաժեշտ է օգտագործել բազմապրոֆիլ արտադրությունների զարգացման հնարավորությունները՝ ելնելով տվյալ տեղանքի բնակչության ավանդույթներին համապատասխանող որոշակի առանձնահատկություններից:

Սակայն այստեղ լուրջ պրոբլեմ է այդ օբյեկտների տեխնիկական ցածր մակարդակը: Այսպես, եթե հանրապետության թեթև արդյունաբերության գլխավոր ձեռնարկություններում տասը տարուց ավելի օգտագործվող սարքավորումների տեսակարար կշիռը կազմում է 15—20, իսկ ավելի քան 20 տարի օգտագործվողներինը՝ 4—6 տոկոս, ապա հանրապետության տարբեր շրջաններում գտնվող մասնաճյուղերում այդ ցուցանիշները կազմում են համապատասխանաբար՝ 50—60 և 15—20 տոկոս: Նման վիճակը հանգեցնում է թողարկվող արտադրանքի որակի իջեցման, տեսականու սահմանափակման, արտադրանքի նորացման ցածր գործակցի: Բացի այդ, մասնաճյուղերը, որպես կանոն, աշխատում են մեկ հերթ, որի դեպքում սարքավորումների հերթափոխայնության գործակիցը նվազում է:

Միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների փոխադրումը աշխատանքի բազմահերթ ռեժիմի նպաստում է արտադրական պոտենցիալի ռացիոնալ օգտագործմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, արտադրանքի որակի բարձրացմանը: Այդ հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի որոշմամբ նախատեսված է 1987—1988 թթ. իրականացնել սարքավորումների փոխադրումը աշխատանքի երկհերթ ու եռհերթ ռեժիմի՝ հատուկ ուշադրություն դարձնելով արտադրության տեխնիկական վերազինմանն ու վերակառուցմանը, հիմնական ֆոնդերի ակտիվ մասի արագ նորացմանը, կարողությունների նախագծային մակարդակի հասնելուն, բարձրարտադրողական տեխնիկայի առավելագույնս օգտագործմանը: Մասնաճյուղերում, սարքավորումների օգտագործման արդյունավետության բարձրացման, երկու և երեք հերթի աշխատանք կազմակերպելու հետ մեկտեղ, կստեղծվեն տնային ու անձնական տնտեսության մեջ զբաղված անձանց հանրային արտադրությանը մասնակից դարձնելու պայմաններ:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հեռանկարային զարգացման պրոբլեմը, ամբողջությամբ վերցրած, չի կարելի քննարկել համապատասխան ճյուղերի արտադրական պոտենցիալի օգտագործման վիճակից կտրված: Կարողությունների ոչ լրիվ բեռնվածության պատճառով մեր հանրապետությունը ամեն տարի պակաս է ստանում միլիոնավոր ռուբլու արտադրանք:

Չնայած թեթև ու տեղական արդյունաբերության հիմնական ֆոնդերի աճին ու կառուցվածքի կատարելագործմանը, դրանց օգտագործումը չի համապատասխանում



արդի պահանջներին: Այսպես, անցած հնգամյակի տարիներին թեթև արդյունաբերության մեջ սարքավորումների փաստական պարապուրդները 2,5 անգամ գերազանցեցին պլանով սահմանված նորմաները: Մի շարք արտադրություններում սարքավորումների արտադրողականությունը ցածր է միջին միութենական ցուցանիշներից:

Այդ պրոբլեմների լուծման գործում կարևոր նշանակություն ունի օժանդակ ու նախապատրաստական արտադրամասերի և հիմնական արտադրությունների անհամամասնությունների վերացումը: Շատ ձեռնարկություններում օժանդակ ու նախապատրաստական ստորաբաժանումների տեխնիկական հագեցվածության մակարդակը խիստ ցածր է հիմնական արտադրության համեմատությամբ: Այսպես, եթե հիմնական արտադրություններում մեքենայացման մակարդակը կազմում է 50—60 տոկոս, ապա օժանդակներում՝ հազիվ 20—30 տոկոս: Նման պայմաններում շատ ձեռնարկություններ չեն կատարում նոր տեխնիկայի ներդրման պլանները և արտադրական պրոցեսների ու ձեռքի ծանր աշխատանքի մեքենայացման ծրագիրը:

Հարկ է նշել, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մեջ մինչև վերջին ժամանակներս գերակշռում էր հիմնական ֆոնդերի մասնակի նորացման միտումը, երբ ֆիզիկապես մաշված սարքավորումները փոխարինվել են նորերով, որոնք իրենց տեխնիկատնտեսական բնութագրերով հներից լավը չեն եղել: Հաճախ են դեպքերը, երբ հնացած սարքավորումները գլխավոր ձեռնարկություններից ուղարկվում են մասնաճյուղեր, որը և հանգեցնում է վերջիններիս ֆոնդահատույցի նվազեցմանը:

Հետևապես, զանգվածային պահանջարկ վայելող ապրանքների արտադրության ձեռնարկություններ կազմակերպելիս առաջնահերթ խնդիր պետք է դառնա բարձրարտադրողական նոր սարքավորումներով դրանց ապահովումը: Այդ նպատակին է ուղղված «Գիտատեխնիկական առաջընթացի 1991—2010 թթ. կոմպլեքսային ծրագրի մշակումը կազմակերպելու մասին» ՍՍՀՄ ԳԱ և գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի 1985 թ. հուլիսի 12-ի որոշումը, որով հատուկ ուշադրություն է դարձվում ինվեստիցիոն, բնական, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, երկրորդային ռեսուրսների կիրառության ոլորտի ընդլայնմանը: Վերջինս առանձնակի նշանակություն ունի ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի համար, քանի որ դրանց արտադրությունը հանրապետությունում գրեթե ամբողջապես պայմանավորված է ներմուծվող հումքով:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության արագ զարգացման կարևոր պայմաններից մեկը այդ ճյուղը որակյալ կադրերով ապահովելն է: Վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության թեթև ու տեղական արդյունաբերության որոշ ձեռնարկություններում, չնայած արդի տեխնիկայով ու տեխնոլոգիայով դրանց հագեցվածությանը, չի ապահովվում թողարկվող արտադրանքի անհրաժեշտ մակարդակը: Եվ դրա պատճառը հենց կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործում եղած թերություններն են: Շատ դեպքերում արտադրության վերազինումը չի ուղեկցվում անհրաժեշտ քանակի ու որակի բանվորական կադրերի ու մասնագետների պատրաստմամբ: Տվյալ պրոբլեմի լուծումը մեծապես կապված է կրթության համակարգի վերակառուցման հետ:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացման նշված ուղղությունները, անշուշտ, կապահովեն բնակչության պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը, արտադրանքի որակի բարձրացումը և կվերացնեն զանգվածային պահանջարկ վայելող մի շարք արտադրատեսակների զգացվող պակասը:

---

# ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՄԱԿՆԻՇԻ ՊԱՏԻՎԸ

Ա. ՍԱՔԱՆՅԱՆ

## ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

Երևանի Հոկտեմբերի 40-ամյակի անվան կաբելի գործարան: «Անդրկովկասկաբել» արտադրամիավորման գլխավորող ձեռնարկությունն է, որի համբավը դուրս է եկել հանրապետության սահմաններից. այսօր այն էլեկտրալարեր ու կաբելներ է առաքում Միության շուրջ 600 քաղաքների հասցեներով, նաև՝ արտասահմանյան մի քանի երկիր: Գործարանն ունի ավելի քան 3.000 պատվիրատու... ասել է, թե՝ նրա մարդիկ պատասխանատու են այդքան կոլեկտիվների առջև ու կարող են իրենց ներդրումն ունենալ նրանց թողարկած արտադրանքի որակական ցուցանիշների լավացման գործում:

Այդ պատասխանատվությունն էլ ստիպում է կաբելագործներին՝ աշխատել խղճի մտոք, ժամանակին կատարել պատվերներն ու մատակարարումների պլանները, անել այնպես, որ ինչ-որ տեղ, ինչ-որ ձեռնարկությունում խափանումներ չլինեն իրենց պատճառով, ամենուրեք գոհ լինեն առաքած արտադրանքի որակից: Անցած տարի մատակարարումների պլանը կատարվեց լիովին, իսկ վերջերս շնորհակալական նամակ ստացվեց Վրաստանից. տարերային աղետի ենթարկված շրջանների համար նախատեսված արտադրանքի առաքման ընթացիկ տարվա առաջին եռամսյակի առաջադրանքը կաբելագործները կատարեցին երկու ամսում: Դա ժամանակին ցույց տրված օգնություն էր...

«Արտադրանքը պատվիրատուներին ուղարկել ժամանակին ու բարձր որակով»: Սա հենց այնպես ասված խոսք ու խոստում չէ, սա կաբելագործների աշխատանքի նպատակն ու նշանաբանն է: Եվ նրանք գործով են ապացուցում, որ հավատարիմ են իրենց խոստմանը: Անցած տարվա դեկտեմբերի 2-ին էր: Արտադրամիավորման կուսկոմիտեի անդամները հավաքվեցին նիստի: Քննարկվում էր թողարկվող արտադրանքի որակի բարելավման նպատակով հսկողությունն ուժեղացնելու հարցը: Գործարար խոսակցություն ծավալվեց, կոմիտեի անդամների մեծ մասը ելույթ ունեցավ: Եվ այստեղ էլ ծնունդ առավ նախաձեռնությունը, ընդունվեց որոշում՝ գործարանը ներգրավել արտադրանքի պետական ընդունման ոլորտը, թեև այն պաշտոնապես չի մտցվել այդ միջոցառմանը մասնակցող ձեռնարկությունների ցուցակում: Կուսկոմիտեն հաշվի առավ այն հանգամանքը, որ միավորման գլխավորող ձեռնարկությունը՝ կաբելի գործարանը, ծանրակշիռ տեղ ու դեր ունի երկրի առաջատար ճյուղերի մատակարարումների համակարգում, ուստի և չի կարող հեռու մնալ այդ շարժումից:

Կուսկոմիտեն հանձնարարեց միավորման արհկոմի նախագահ Կ. Զաքարյանին, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին, ստորաբաժանումների ղեկավարներին՝ կոլեկտիվներում անցկացնել բանվորական ժողովներ՝ պետընդունման կապակցությամբ աշխատանքի պայմանները պարզաբանելու համար: Գլխավոր դիրեկտորի տեղակալ, տեխնիկական վերահսկողության պետ Գ. Մարկոսյանի առջև խնդիր դրվեց՝ տեխնիկական վերահսկողության բաժնի և արտադրամասային հսկողական ծառայությունների աշխատանքը կազմակերպել պետընդունման պայմաններին համապատասխան: Որոշվեց նաև նախապատրաստել ու անցկացնել այդ միջոցառմանը նվիրված սեմինար-պարապմունք:



Ծուտով գումարվեց արտադրանքի որակի բարելավմանն ու պետընդունմանը նվիրված համագործարանային խորհրդակցություն, որին հրավիրվեցին ստորաբաժանումների ղեկավարներն ու մասնագետները, առաջավոր բանվորները: Այս հարցի շուրջ պարզ ու սրտաբաց զրույց ծավալվեց նաև փոքր ու մեծ բոլոր կոլեկտիվներում: Արտադրանքի պետընդունման ոլորտը ներգրավելու վերաբերյալ կուսկոմիտեի նախաձեռնությունն արժանացավ ջերմ հավանության ու լայն պաշտպանության: Կաբելագործները պատրաստակամություն հայտնեցին հետևողական պայքար ծավալել հանուն ձեռնարկության մակնիշի պատվի, պատվիրատուներին մատակարարել միայն բարձրորակ արտադրանք:

«1987 թվականի հունվարի 1-ից գործարանի կոլեկտիվն անցնում է պետընդունման»— պաստառների վրա ամենուրեք այս լոզունգն է: Ահա և կոնկրետ գործը. «Պետընդունման սկզբունքով,— ասում է միավորման գլխավոր դիրեկտոր Հ. Բաղեյանը,— ստեղծել ենք հատուկ հանձնաժողով, որը սիստեմատիկաբար ստուգում է արտադրանքի թողարկման տեխնոլոգիական ռեժիմը, հետևում որակին. ինչ-որ բա՞ն է նկատում, տեղնուտեղը կանխում, շտկում, վերացնում է ցածր որակի պատճառը»:

Ոչ միայն դա: Յուրաքանչյուր չորեքշաբթի այստեղ անցկացվում է որակի օր: Ձեռնարկության, ստորաբաժանումների, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կոմիտեների ղեկավարները, մասնագետները, միջին օղակի կադրերը, ավագ վարպետները հավաքվում ու լսում են գլխավոր տեխնոլոգի հաղորդումն այս կամ այն արտադրությունում անցած շաբաթվա ընթացքում թողարկված արտադրանքի որակի վերաբերյալ: Խոսվում է այն մասին, թե ի՞նչ ուսանելի բան կա այդ ասպարեզում, ինչպիսի՞ թերացումներ ու թերություններ են նկատվել և ի՞նչ պիտի անել դրանք վերացնելու համար:

Եվս մեկ նախաձեռնություն. այն ծնունդ է առել տակավին 1985-ի վերջերին մետաղագործական արտադրության ձգման տեղամասում: Նրա կոլեկտիվը պատրաստակամություն հայտնեց նոր հնգամյակի առաջին երկու տարվա պլանը կատարել մեծ Հոկտեմբերի 70-ամյակի օրը: Նախաձեռնությունը պաշտպանեցին մյուս արտադրամասերի ու տեղամասերի կոլեկտիվները, և այն դարձավ համագործարանային:

Ի՞նչ է արվել նախաձեռնությունը գործի վերածելու համար: Նախ՝ միայն 1986-ին թողարկվել է 4.577 հազար ռուբլու արտապլանային արտադրանք, արտադրության ծավալի աճի տեմպը, նախատեսված 4,2-ի փոխարեն, կազմել է 8,9 տոկոս: Գերակատարվել են տեխնիկատնտեսական ու որակական մյուս ցուցանիշների առաջադրանքները: Եվ գործարանի կոլեկտիվը հաղթող ճանաչվեց հանրապետական սոցիալիստական մրցությունում: Ապա՝ կաբելագործները լավ սկսեցին նաև նոր հնգամյակի երկրորդ, հոբելյանական տարին: Առաջին եռամսյակում պետական պլանից ավելի թողարկվել է 1 մլն 146 հազար ռուբլու արտադրանք: Միավորման գլխավոր դիրեկտորը տեղեկացնում է, որ հնարավորություն կա նախաձեռնությամբ ստանձնած պարտավորությունները կատարելու ավելի շուտ: Գործարանի կոլեկտիվը պատրաստակամություն է հայտնել տասներկուերորդ հնգամյակը դարձնել դրոշակակիր:

Բոլոր հիմքերը կան՝ համոզվելու, որ նրանք իրենց խոսքի տերը կլինեն, պատվով կլուծեն վերակառուցումից ու արագացումից բխող խնդիրները: Նախադրյալները ստեղծված են, կուսկոմիտեն ու դիրեկցիան, քննադատաբար գնահատելով իրենց արածը, ամեն կերպ ձգտում են ամրապնդել հաջողությունները, հաղթահարել դրանց զարգացմանը խոչընդոտող դժվարությունները:

## ՀԱՆՈՒՆ ՆՈՐԱՑՄԱՆ ՈՒ ԲԱՐՁՐ ՈՐԱԿԻ

Կարևորելով երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիայի նշանակությունը՝ Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում ասաց. «Ի՞նչ ենք հասկանում մենք արագացում ասելով: Ամենից առաջ տնտեսական աճի տեմպերի բարձրացում: Բայց ոչ միայն: Նրա էությունը աճի նոր որակն է՝ արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը գիտատեխնիկական առաջադիմության, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, աշխատանքի կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի հիման վրա»:

Արտադրության աճի տեմպը կաբելի գործարանում բարձր է, իսկ ինչպե՞ս են լուծվում որակին առնչվող հարցերը: Չէ՞ որ առանց նորացման՝ բարձր որակ հնարավոր չէ ապահովել: Ընդ որում, հարկավոր է նորացնել և՛ մեքենասարքավորումները, և՛ դրանց հիման վրա՝ արտադրատեսակները: Այդ գործին կաբելագործները

լու համար: Տասնմեկերորդ հնգամյակում հատկացվել է 4—5 տոկոսը: Պարզ է, խրախուսանքի արժանանում են, ինչպես ասվեց, միայն պլանները բարձր ցուցանիշներով գերակատարած այն բանվորները կամ կոլեկտիվները, որոնք միաժամանակ ապահովել են արտադրանքի բարձր որակը:

Կաբելի գործարանի կոլեկտիվը նախապատրաստվում, բազմակողմանի աշխատանք է կատարում ինքնաֆինանսավորման և լրիվ տնտհաշվարկի անցնելու համար: Դա իր արտացոլումն է գտել նաև սոցիալիստական պարտավորություններում: Նախատեսվում է այս տարի ստեղծել տնտհաշվարկային բրիգադներ և դրանցում ներգրավել բրիգադներում աշխատող բանվորների կեսը: Այդ միջոցառումը, ինչպես նաև սոցիալական զարգացման վերաբերյալ ստանձնած պարտավորությունների կատարումը մեծապես կխթանեն բարձրորակ արտադրանքի թողարկումը: Ի դեպ, կաբելագործների լավ աշխատանքի համար ձեռնարկությունում ստեղծվել են կենցաղային ու հանգստի բարենպաստ պայմաններ: Գործում են ճաշարաններ, բուֆետներ ու սրճարաններ, կանանց ու տղամարդկանց անվճար վարսավիրանոցներ, բոլոր արտադրական մասնաշենքերում կան հանդերձարաններ, ցնցուղարաններ, հանգստի սենյակներ: Արմատական վերակառուցում է կատարվում սոցիալական զարգացման ամբողջ ոլորտում: Բարձրորակ արտադրանք տվող բանվորը պետք է ունենա աշխատանքի լավ պայմաններ, ակտիվ հանգստի լայն հնարավորություններ: Դա միանգամայն համահունչ է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուսակցության ստրատեգիական կուրսի պահանջներին:

**ԱՆԵԼԻՔՆԵՐ**

Արդյոք ամեն ինչ արվե՞լ է ձեռնարկությունում առաջադրված խնդիրները լուծելու, մասնավորապես արտադրանքի բարձր որակը մշտապես ապահովելու համար: Այդ հարցին արտադրամիավորման գլխավոր դիրեկտորը կոնկրետ է պատասխանում.

— Ասել, թե ամեն ինչ արել ենք և կատարյալ պայմաններ ստեղծել բարձրորակ արտադրանքի համար, սխալ կլինի: Նախ՝ արտադրության վերակառուցումը—վերազինումը դեռևս շարունակվում է, ընթացիկ հնգամյակում լիովին կնորացնենք բոլոր մեքենասարքավորումները: Երկրորդ՝ օժանդակ աշխատանքների 40 տոկոսը կատարվում է ձեռքով, եթե դրանք մեքենայացնենք, ապա զգալի արտադրական աճ կունենանք, էապես կբարելավվեն աշխատանքի պայմանները: Հարկավոր է մեքենայացնել նաև ստացվող հումքի և պատրաստի արտադրանքի բեռնում-բեռնաթափումը, կիսաֆաբրիկատների տեղափոխումը ագրեգատից ագրեգատ, արտադրամասից արտադրամաս: Երրորդ՝ փաթեթավորումը այսօրվա պահանջներին չի համապատասխանում. ցածրորակ են ստացվող մետաղն ու փայտանյութը: Կուսակցությունը վերակառուցում է պահանջում ամենուրեք ու բոլոր մակարդակներում: Մենք վերակառուցման իմաստը տեսնում ենք մեր գործունեության բոլոր բնագավառներում որակական շրջադարձի մեջ: Ուրեմն, դեռ շատ անելիքներ ունենք...

Գործարանի կոլեկտիվի սոցիալական զարգացման համար ևս լայն հեռանկարներ են բացված: Այդ առթիվ արհմիության կոմիտեի նախագահ Կ. Զաքարյանն ասում է.

— Վերակառուցման ու արագացման կուսակցության կուրսը պահանջում է հոգատարությամբ շրջապատել նյութական բարիքներ արարող մարդուն: Ճիշտ է, այդ ասպարեզում մենք որոշակի ձեռքբերումներ ունենք, սակայն շատ են նաև անելիքները: Ընթացիկ հնգամյակում Աղվերանում կառուցելու ենք պանսիոնատ, որտեղ շուրջ տարին իրենց հանգիստը կանցկացնեն մեր բանվոր-ծառայողները: Ձմռան ամիսներին նրանց համար երկօրյա հանգստի պայմաններ կստեղծենք Մեղրաձորի մեր պիոներական ճամբարում: Աշխատողների կենցաղային և առևտրական սպասարկումն է՛լ ավելի բարելավելու նպատակով գործարանի տարածքում կբացենք նաև արդյունաբերական ապրանքների խանութ և կենցաղային զանազան ծառայությունների տաղավար: Համապատասխան ֆինանսական միջոցներ են առանձնացվել՝ կոլեկտիվի անդամներին տարեկան ավելի քան 1000 քմ բնակելի մակերես հատկացնելու համար: Կիրականացվեն նաև սոցիալական զարգացման այլ միջոցառումներ:

... Կաբելագործները քայլում են վերակառուցման ու արագացման ուղիով, հաղթահարում առաջընթացն արգելակող խոչընդոտները, լի են վճռականությամբ նվաճելու նոր, բարձր բնագծեր: Եվ բոլոր վերափոխումների առանցքը բարձրորակ արտադրանքի թողարկումն է, ձեռնարկության մակնիշի պատվի համար անխոնջ պայքարը...

## Մարդկային գործոն. ակտիվացման ուղիները

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, նրան նախորդած ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը նշանավորեցին մեր հասարակության տնտեսական ու հոգևոր կյանքում զարգացման նոր, շրջադարձային փուլի սկիզբը: Կուսակցական որոշումներն այժմ սովետական մարդկանց ստեղծագործական աշխատանքների հիմնական բովանդակությունն են կազմում: Արագացման ստրատեգիան արմատական բեկում մտցրեց մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերի մեջ, մերժելով կառավարման հնացած մեթոդներն ու ձևերը:

Կարևորելով սոցիալիստական պրակտիկայի արդի փուլի իմաստավորման կենսական նշանակությունը, կուսակցությունը առանձնապես շեշտեց քննադատության ու ինքնաքննադատության դերը նոր մտածելակերպի ու գործելակերպի հաստատման բնագավառում: ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ հատկապես նշվում է, որ մեր երկրում այժմ ավելի, քան երբևէ, զգացվում է դեմոկրատիայի հետագա խորացման, քննադատությունը և ինքնաքննադատությունը զարգացնելու, շքամոլության դեմ պայքարն ուժեղացնելու անհրաժեշտությունը: Ո՞րն է քննադատության և ինքնաքննադատության օբյեկտիվ անհրաժեշտությունը և ապա՝ ինչու՞մն է քննադատության և ինքնաքննադատության՝ որպես մեր հասարակության կենսագործունեության բնական սկզբունքի, էությունը: Այնուհետև, որո՞նք են սոցիալիզմին բնորոշ այդ օրինաչափության արդի խնդիրները:

Մարքսիզմ-լենինիզմի դասականները, մշակելով գիտական կոմունիզմի հիմունքները, անցումը կապիտալիզմից կոմունիզմին բնորոշել են որպես մարդկության արմատական որակական թռիչք տարերային անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը (տե՛ս Ֆ. Էնգելս, **Անտի Դյուրինգ**, «Հայաստան» հրատ., 1967, էջ 381): Մարքսը, «տարերային անհրաժեշտություն» հասկացության մասին, Կուգելմանին գրած նամակում (11-ը հուլիսի, 1868) երկու խոսքով այդ միտքն այսպես է արտահայտում. «Բուրժուական հասարակության ամբողջ աղը հենց այն է, որ նրանում a priori գոյություն չունի արտադրության ոչ մի գիտակցական հասարակական կարգավորում: Բանականը և բնականաբար անհրաժեշտը դրսևորվում է սոսկ որպես կուրորեն գործող միջինը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր երեք հատորով**, հ. 2, 1973, էջ 565):

Կապիտալիստական հասարակարգը հենվում է մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վրա և այնտեղ տարբեր քաղաքացիների ու դասակարգերի միջև ոչ թե շահերի միասնությունը, այլ անհաշտ պայքարն ու մրցակցությունն է իշխում, ծայրահեղ ինդիվիդուալիզմն ու դասակարգերի հակամարտությունը: Այսօր իմպերիալիստական աշխարհը համակել է արտադրության ռազմականացումը, որը տիրապետող հարուստ վերնախավին առասպելական շահույթներ է բերում, իսկ աշ-

Ե՛վ արտադրության մեջ, և՛ հիմնարկ-ձեռնարկություններում, և՛ գաղափարական աշխատանքների ճակատում զգալի են հին, պահպանողական ավանդույթներն ու մտածելակերպի ճնշող ազդեցությունը: Հանրապետության ներքին կյանքում գոյություն ունեցող թերացումները վերացնելու և արմատական վերակառուցման հեղափոխական շրջադարձի մթնոլորտ ստեղծելու գործում չափազանց կարևոր անելիքներ ունեն մեր գաղափարական ճակատի աշխատողները, հասարակագետները:

Ֆ. Էնգելսը, բնութագրելով սոցիալական ազատությունը, նկատում է, որ մշակույթի բնագավառում մարդկության ամեն մի առաջաքայլ մի քայլ է դեպի ազատությունը (տե՛ս Ֆ. Էնգելս, **Անտի Դյուրինգ,** բաժին I, գլ. XI, էջ 153): Եվ միանգամայն օրինաչափ է, որ աշխատավոր մարդկության արմատական կուլտուրական վերափոխությունը, ինքնագիտակցության և ինքնաճանաչման հասնելը կապված են կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի հետ, երբ «հասարակ» մարդիկ ոչ միայն արմատականորեն վերափոխում են մարդկային կեցության ողջ համակարգը, նրա տնտեսական ու քաղաքական հարաբերությունները, այլև սեփական ճակատագրի տնօրինումը վերցնում են իրենց ձեռքը, սովորում երկիր կառավարել՝ արդարությունը, ճշմարտությունը և հավասարությունը դարձնելով հասարակական համակեցության ու կառավարման գիտական-բարոյական չափանիշներ:

Կուսակցության ընդունած փաստաթղթերում բազմիցս շեշտվում են ոչ միայն սովետական ժողովրդի սոցիալական ակտիվության աճի ցուցանիշները, այլև արդարության և սոցիալական հավասարության համար նրա պայքարի անհրաժեշտությունը: Նոր սոցիալական պայմաններում աշխատավորներն այլևս պատմության «անգիտակից հիմքը» չեն, այլ իրենց ապագայի գիտակից, ազատ կառուցողները: Նրանք լավ են հասկանում իրենց աշխատանքի հասարակական նշանակությունը: Եվ այդ գիտակցական, ազատ ստեղծագործական աշխատանքի դրսևորումներից են ներքևից եկող քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Դա նոր քաղաքական կուլտուրայի արդյունք է, քանի որ նրանք թե՛ օբյեկտիվորեն, թե՛ սուբյեկտիվորեն սոցիալապես կազմակերպված են:

Եվ, վերջապես, մեր հասարակության անդամների ինքնաքննադատությունը հասարակականորեն գիտակցված անհրաժեշտության դրսևորումն է: Իհարկե, այն հանգամանքը, որ անհրաժեշտությունը գիտակցված է, երբեք չի նշանակում, թե այն դադարում է օբյեկտիվ անհրաժեշտություն լինելուց, ինչպես պնդում են արևմտաեվրոպական որոշ սոցիալիստ տեսաբաններ: Այդ միայն նշանակում է, որ մարդիկ, գիտակցելով ժամանակի անմիջական խնդիրները, ճանաչում են նրանց բնույթը և իրենց միասնական աշխատանքով նպաստում դրանց լուծմանը: Անհրաժեշտությունը դադարում է տարերային լինելուց, քանի որ պատմության մեջ տարերայնությունը անհատական շահերի այն կույր բախման ասպարեզն է, որը, ինչպես Լենինն է ասում, մշտապես ու մեծ մասշտաբներով հակամարտություն է ծնում: Միասնական նպատակի իրականացումը աշխատավորների միահամուռ գիտակցական աշխատանքի միջոցով այլ բան չէ, բան աշխատավորների հեղափոխական պրակտիկան:

Պատմության օբյեկտիվ օրենքների գործողություններն ընդհանուր զարգացման շահերին ենթարկել կարելի է միայն այնպիսի պայմաններում, երբ հասարակության անդամների միջև գոյություն ունի միասնական նպատակ, կամքի ու ձգտումների ընդհանրություն: Այդպիսին է մարքս-լենինյան գիտության ելակետային սկզբունքը կոմունիստական շինարարության մեջ: Հետևաբար, նոր հասարակարգի հաջող կառավարման գրավականն ամենից առաջ հասարակության բոլոր քաղաքացիների, դասակարգերի ու խավերի սոցիալական միասնության ստեղծումն է:

Նոր հասարակարգի կառուցման հաջողությունը պայմանավորված է նաև այն բանով, թե ինչպիսի ակտիվությամբ են նրանում ընդգրկվում աշխատավորները: Իսկ դա մեծապես բխում է կուսակցության քաղաքական կուրսի ճշտությունից, որն անմիջականորեն արտահայտում է աշխատավորների կենսական շահերը:

Այժմ, կուսակցության ինքնաքննադատական ոգին դարձել է տիրապետող մեր տնտեսական և գաղափարադաստիարակչական աշխատանքում: «Մոտ անցյալից մենք գիտենք,— նշվում է Քաղաքական զեկուցման մեջ,— որտեղ քննադատությունն ու ինքնաքննադատությունը խլանում են, որտեղ իրական իրադրության կուսակցական վերլուծությունը փոխարինվում է հաջողությունների մասին խոսակցություններով, այնտեղ խախտվում է ամբողջ կուսակցական գործունեությունը, ստեղծվում բարեհոգության, ամեն ինչում թույլատրելիության և անպատժելիության մթնոլորտ, որը հանգեցնում է ամենալուրջ հետևանքների» (էջ 112):



Հաղթահարելով աշխատանքներում տեղ գտած սխալներն ու թերությունները, կուսակցությունն ամրապնդում է կապը աշխատավորական զանգվածների հետ, նվաճում նրանց պարտավորեցնող վստահությունը: Այդպիսի անմիջականությունն ու անկեղծ ինքնաքննադատական մթնոլորտը չեն կարող չբարձրացնել աշխատավորների սոցիալական ակտիվությունը:

Քննադատության և ինքնաքննադատության բացակայությունն առաջացնում է սոցիալիստական ապրելակերպին խորթ անսկզբունքայնություն, սեփական բարօրության և կարիերիստական նկատառումների արմատավորում: Առաջանում է ղեկավարների պաշտամունք, ստորաքարշների ու քծնողների շրջապատ նրանց շուրջը: Հարկավոր է արմատապես վերջ դնել նման երևույթներին կուսակցության մեջ և պետական ապարատում: Նման իրադրությունը ստեղծում է ոչ միայն բացարձակ անպատասխանատվություն, այլև ինքնահանգստության և լճացման վտանգավոր վիճակ: «Մենք չենք կարող ոչ մի քայլ առաջ շարժվել, եթե չսովորենք աշխատել նորովի, չենք կարող հաղթահարել քարացածությունը և պահպանողականությունը՝ իրենց բոլոր դրսևորումներով, եթե կորցնենք իրադրությունը սթափ գնահատելու, այն ինչպիսին որ կա տեսնելու արիությունը» (նույն տեղը, էջ 111):

Սատիճանաբար ներկուսակցական կյանքի գործունեության մեջ ինքնաքննադատությունը դառնում է մասսայական հասարակական աշխատանքային պրակտիկա, կոլեկտիվների ու միավորումների գործելակերպի մեթոդ: Մեր առաջընթացն առանց ինքնաքննադատության ուղեկցվում է սոցիալիզմի համար ոչ բնորոշ թերությունների և սոցիալիստական օրինականության ու ապրելակերպի նորմերից խոտորումների նկատմամբ հանդուրժողականությամբ: Դրանցից են տարերայնությունը, սուբյեկտիվությունը, վարչական կամայականությունը, պասսիվությունը: Քննադատական վերաբերմունքը մեր հասարակության ամեն մի քաղաքացու և՛ իրավունքն է, և՛ պարտականությունը: Նոր պայմաններում մարդիկ չեն կարող անտարբեր լինել ոչ միայն վարքի տարրական կանոնների կամ աշխատանքային կարգապահության խախտմանը, այլև մեր ամենամյա ու հեռանկարային պլաններին, տնտեսական ու հոգևոր կյանքի փոփոխություններին, մի խոսքով՝ մեր սոցիալիստական ապրելակերպին: Ինքնաքննադատությունը ժողովրդական զանգվածների կյանքում այն անմիջական հասարակական պրակտիկան է, որն ավելի հարուստ է ու բազմազան, քան այդ նույն կյանքի ընդհանրական տեսական մոդելը: Ղեկավարը, կուսակցականը կամ գաղափարական աշխատողը չի կարող կողմնորոշողի իր դերում լինել՝ առանց պրակտիկ կյանքի առաջադրած պահանջներին արձագանքելու: «Առաջավոր գաղափարների և **նոր հասարակության կառուցման պրակտիկայի փոխադարձ կապից է եռանդ ու գործունեություն քաղում սոցիալիստական գաղափարախոսությունը»** (նույն տեղը, էջ 120):

Բուրժուական գաղափարախոսները ժխտում են ոչ միայն ժողովրդական զանգվածների ստեղծագործական կարողությունները, այլև քննադատության, կառավարման արվեստն ու կարողությունը նրանք վերագրում են միայն տերերին՝ այսպես կոչված «ստեղծագործական փոքրամասնությանը»: Իսկ աշխատավորներին համարում են պատմության «պասսիվ մեծամասնություն», որն ունակ է միայն «առօրյա հոգսերի» և անմիջական «սպառման պահանջմունքների հետևից վազել»: Այսօր Արևմուտքում նորից փորձում են կյանքի կոչել նիցշեական «գերմարդու» գաղափարը, որն այնքան անփառունակ վախճան ունեցավ գերմանական ֆաշիզմի պրակտիկայում:

Արդի բուրժուական գաղափարախոսները չեն ուզում հասկանալ, որ պատմության մեծ շրջադարձերի ժամանակ միշտ ժողովրդական շարժումն է տապալում հնացած հասարակարգը և նրա փոխարեն ստեղծում նորը: Եվ ամենագլխավորը, որ չեն կարողանում լիովին հասկանալ մեր գաղափարական հակառակորդները, արդի դարաշրջանի գնահատումն է: Ընդունելով, որ Մարքսը մեծ գիտնական է, տեսաբան, սոցիոլոգ, տնտեսագետ, նրանք չեն ընդունում նրա այն խոշոր հայտնագործությունը, որ ժողովուրդն է պատմության հիմնական կերտողը, որովհետև նա է բարիքներ ստեղծում իր ամենօրյա աշխատանքով: Նրանք չեն ընդունում, որ Մարքսի մշակած գիտական փիլիսոփայության, դիալեկտիկական մատերիալիզմի մեթոդը՝ դիալեկտիկան իր «էությամբ քննադատական է ու հեղափոխական» (Կ. Մարքս, **Կապիտալ,** հ. 1, 1954, էջ 20):

Դիալեկտիկայի քննադատական և հեղափոխական ոգին ակնհայտորեն երևում է նաև մեր իրականության մեջ, երբ կյանքի փոփոխման ու զարգացման հետ սովե-

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ**

ԱՅՍՕՐ, ԻՆՉՊԵՍ ԵՐԲԵՔ, ՀԱՐԿԱՎՈՐ ԵՆ այնպիսի մարդիկ, որոնք շահագրգռված լինեն աշխատելու ակտիվորեն, պրոֆեսիոնալ բարձր վարպետությամբ, նորարարական ավյունով: ՍՄԿԿ XXVII համագումարի նման հարցադրումը պայմանավորված է սովետական հասարակության զարգացման միտումներով, ժողովրդական տնտեսության մեջ շեշտակի բեկում կատարելու անհրաժեշտությամբ:

Մեր հանրապետության տնտեսական պրակտիկայից կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ տնտեսավարման սոցիալիստական սիստեմի բոլոր այլ առավելությունների ֆոնի վրա մարդու տնտեսական բարձր կուլտուրան ապահովում է հասարակական աշխատանքի արտադրողականության էական աճ: Այդ առումով կարևոր է համագումարյան գաղափարները դարձնել հանրապետության յուրաքանչյուր աշխատավորի սեփականությունը, օգնել նրանց՝ մարքս-լենինյան ուսմունքի դիրքերից վերլուծելու և ըմբռնելու արդի պրոցեսները, գտնելու իրենց տեղը վերակառուցման և արագացման համար մղվող պայքարում:

Արդի ժամանակաշրջանը պահանջում է ոչ միայն զուտ «լուսավորչական», այլև բուն տեսական, վերլուծական, հետազոտական ջանքեր, հասարակության մեջ կատարվող պրոցեսների վերաբերյալ ունեցած գիտելիքների աճ այն հաշվով, որպեսզի արագորեն լուծվեն հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման հասունացած պրոբլեմները: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը հատկապես ընդգծեց, որ վերակառուցումն աշխատողներից պահանջում է բանիմացություն և բարձր պրոֆեսիոնալիզմ, ժամանակակից և բազմակողմանի պատրաստություն:

Պայքար ծավալելով հասարակության առողջացման համար՝ կուսակցությունը ելնում է այն բանից, որ այդ աշխատանքն անհրաժեշտ է դնել համոզման ամուր հիմքի վրա: Ուստի գաղափարախոսական գործունեության գլխավոր խնդիրներից մեկը պետք է լինի միլիոնավոր աշխատավորների գիտակցությունը վերակառուցման ոգով ձևավորելը: Նորացման գաղափարները խորապես համակում են մասսաներին, մինչդեռ գաղափարախոսական ճակատում աշխատանքը դեռևս ինչպես հարկն է չի ծավալվել՝ հատկապես քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման ուղղություններում: Պլենումը նշեց, որ այդ բնագավառին նոր թափ հաղորդելու նպատակով կուսակցության գաղափարախոսական կորպուսը պետք է համալրվի XXVII համագումարի որոշումների, վերակառուցման կուրսի իրականացմամբ տոգորված մարդկանցով:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կոնցեպցիային համապատասխան՝ առավել հրատապ նշանակություն են ստացել կուսակցության գաղափարախոսական գործունեությունը, հոգևոր կուլտուրայի տարբեր ձևերի ու բաղադրամասերի համակողմանի կատարելագործումը՝ մարդու մեջ քաղաքական, տնտեսական, պրոֆեսիոնալ արտադրական, աշխատանքային, կենցաղային, իրավական, բարոյական, գեղագիտական, էկոլոգիական, ֆիզիկական, սպասարկման, սպառման կուլտուրաների դաստիարակությունը:

Մեր օրերում, երբ տնտեսական բոլոր օղակներում իրականացվում է արտադրության ինտենսիվացման, ռացիոնալ տնտեսավարության, աշխատանքի որակի բարձրացման կուրսը, բացառիկ նշանակություն է ձեռք բերում աշխատավորների մասսայական տնտեսագիտական կրթությունը: Սկսել են գործածվել այնպիսի հասկացու-



թյուններ, ինչպիսիք են «տնտեսագիտական գիտակցություն», «տնտեսագիտական մտածողություն», «նոր տիպի տնտեսագիտական գործելակերպ», «տնտեսագիտական դաստիարակություն», «տնտեսական կուլտուրա» և այլն, որոնք տեղ չեն գտել ոչ միայն ընդհանուր, հանրագիտական, այլև նույնիսկ տնտեսագիտական բառարաններում կամ ձեռնարկներում: Մինչդեռ դրա անհրաժեշտությունն ակնհայտ է: Դա պայմանավորված է էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, տնտեսական մեխանիզմը որակապես բարելավելու հրատապությամբ, որոնց կարևոր ու պարտադիր պայմանը հենց ժամանակակից տնտեսագիտական մտածելակերպի ու գործելակերպի առկայությունն է: Իսկ տնտեսագիտական կրթության ու դաստիարակության արդյունքները դրսևորվում են ժամանակակից մտածելակերպ ու գործելակերպ և տնտեսական բարձր կուլտուրա պատվաստելու մեջ, որը մեկ անգամ ևս ընդգծված է «Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման վերակառուցման հիմնական ուղղությունները» համաժողովրդական քննարկման դրված ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում:

Հայտնի է, որ մարդու էությունը ոչ թե նրա կենսաբանական կառուցվածքն է, այլ սոցիալական առնչությունները, հոգևոր նկարագիրը: Կարլ Մարքսը նկատել է, որ ««առանձին անձի» էությունը ո՛չ թե նրա մորուքն է, ո՛չ թե նրա արյունը, ո՛չ թե նրա ֆիզիկական վերացական բնությունը, այլ նրա **սոցիալական հատկությունը...»** (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Երկեր,** հ. 1, «Հայաստան» հրատ., 1985 թ. էջ 266): Ինչպես նյութական ու հոգևոր արժեքներ արտադրելիս, այնպես էլ սոցիալական պրոբլեմներ լուծելիս, մտնելով տարբեր մարդկանց հետ բազմապիսի հարաբերությունների մեջ, ձևավորվում են անհատի հասարակական հատկանիշները: Տնտեսական կուլտուրայի զարգացումն այն կարևոր ուղիներից է, որի շնորհիվ մարդը գիտակցում է իր տեղն ու դերը արտադրական հարաբերությունների համակարգում:

Սոցիալիզմի պայմաններում է միայն տնտեսական կուլտուրայի զարգացումը համընկնում հասարակության օբյեկտիվ ու սուբյեկտիվ պահանջմունքների հետ: Այդ առթիվ Վ. Ի. Լենինն ասել է. «Պատմությունն այժմ մեզ վրա այնպիսի աշխատանք է դրել՝ քաղաքական մեծագույն հեղաշրջումն ավարտել դանդաղ, ծանր, դժվարին տնտեսական աշխատանքով: Սակայն բանն այն չէ, որ արագ վերակազմությամբ բարելավենք գործը, այլ այն է, որ այդ քաղաքական բարեփոխությունը մարսենք կուլտուրական տնտեսական մի այլ մակարդակ ձեռք բերելու համար» (ԵԼԺ, հ. 44, էջ 386, 387): Ուստի տնտեսական քաղաքականության հիմնական պահանջներից են աշխատավորների կողմից պրոֆեսիոնալ ու տնտեսագիտական գիտելիքների տիրապետումը և դրանց գործնական կիրառումը:

Մեր հանրապետությունում 250 հազար մարդ է ընդգրկված տնտեսագիտական կրթության համակարգում, որն, իբրև աշխատավորների հոգևոր կուլտուրայի բաղկացուցիչ մաս, հենվում է գիտելիքների միագումարի վրա, սովորեցնում տնտեսագիտական գրագիտություն, հոգատար վերաբերմունք հասարակական բարիքի նկատմամբ, մշակում սոցիալիստական տնտեսավարության արդյունավետ համակարգ, դաստիարակում տնտեսական բարձր կուլտուրա:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ տնտեսական կուլտուրան ենթադրում է յուրաքանչյուր մարդու մեջ երկրի ու արտադրության հոգատար տիրոջ զգացումի ձևավորում: Այսօրվա տնտեսական կադրերից պահանջվում են քաղաքական հասունություն, համարձակություն ու եռանդ, բարոյական բարձր հատկանիշներ, ինժեներական հաշվարկը տնտեսական նպատակահարմարության հետ զուգորդելու ունակություն, կոլեկտիվի շահերը համաժողովրդականի հետ հմտորեն զուգակցելու կարողություն: Նրանք պետք է օժտված լինեն տնտեսական բարձր կուլտուրայով, կարողանան մտածել արդյունավետության ու ինտենսիվացման կատեգորիաներով:

Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսագիտական գիտելիքներն ինքնին չեն ապահովում տնտեսական կուլտուրան: Դրանք դառնում են ներգործուն ուժ, երբ զուգակցվում են աշխատանքային ու տնտեսագիտական դաստիարակության, երկրի էկոնոմիկայի զարգացմանը խորապես գիտակցված մասնակցության հետ: Իր առավել լիակատար ու առարկայական մարմնավորումը և նյութականացումը տնտեսական կուլտուրան ստանում է ժողովրդական մասսաների ինքնագործ տնտեսավարության, սոցիալիստական ինքնակառավարման տարբեր ձևերում: Այն իրականացվում է աշխատանքի կազմակերպման բրիգադային, ընտանեկան կապալի, անկարգագիր օղակների և այլ նոր ձևերի զարգացմանը մարդկանց ներգրավելու մեջ: Տնտեսական կուլտուրայի կարևոր տարր է նաև նրանց մասնակցությունը աշխատավորական կոլեկտիվի խորհրդում, տարբեր հանձնաժողովներում, տնտեսական վերլուծության հա-

Սոցիալիստական տնտեսավարման սկզբունքներին հակասում է արտադրանքի ծավալների մեծացումը՝ ի հաշիվ ռեսուրսների շռայլման: Հարկավոր է վճռականորեն կրճատել արտադրանքի միավորի վրա կատարվող ծախսումները բոլոր պարամետրերով: Խնդիրն ավելի շատ վերջնական բարձրորակ արտադրանք ստանալն է, հումքի ու կարողությունների յուրաքանչյուր միավորից աշխատանքի ծախսումների վճռական կրճատումը:

Այս ամենն ավելի ու ավելի մեծ հիմք է տալիս շեշտելու սովետական մարդու մեջ հոգևոր կուլտուրայի տնտեսական ձևի պատվաստման անհրաժեշտությունը, որը ենթադրում է հասարակական արտադրության արդյունքների նկատմամբ խնայողական վերաբերմունքի հաստատում: Տնտեսական կուլտուրայի տեր անձն աշխատանքի նկատմամբ ունի սրտացավ վերաբերմունք, դրսևորում է տիրոջ զգացում՝ ստեղծված հոգևոր ու նյութական արժեքների հանդեպ: Ուրեմն տնտեսական կուլտուրան հանդես է գալիս իբրև սոցիալիզմի ինքնուրույն ֆենոմեն լոկ այն դեպքում, երբ ապահովվում է նյութական արտադրության ոլորտում պրոֆեսիոնալ ու տնտեսագիտական գիտելիքների, աշխատանքային ու տնտեսագիտական դաստիարակության և արարման գործունեության միասնությունը: Այսօր տնտեսական բոլոր կադրերի համար կենսական անհրաժեշտություն է էկոնոմիկայի հիմունքների խոր ուսումնասիրությունը: Նրանք պետք է օժտված լինեն նախաձեռնությամբ ու պատասխանատվությամբ, մշտապես հարստացնեն իրենց գիտելիքները, համարձակորեն կայացնեն նորարարական վճիռներ, դրսևորեն դրանք ակտիվորեն իրականացնելու ունակություն:

Ինչ վերաբերում է տնտեսագետների պատրաստմանը, ապա բարձրագույն դպրոցի ռեֆորմով նախատեսվում է ապահովել նրանց քաղաքատնտեսագիտական կրթության բարձր մակարդակի օրգանական զուգորդումը էկոնոմիկայի կոնկրետ ուղղությունների խոր իմացության, տեխնիկայի ու տեխնոլոգիայի բնագավառի լայն մտահորիզոնի, տնտեսական իրավիճակների և լուծումների մաթեմատիկական մոդելավորման մեթոդներից օգտվելու ունակության հետ: Առանձնակի նշանակություն է տրվելու ուսանողներին պլանային-տնտեսագիտական և կառավարչական խնդիրների պրակտիկ լուծման հմտությունների, տնտեսական բարձր կուլտուրայի պատվաստմանը:

Այդ կապակցությամբ Տալլինի պոլիտեխնիկական ինստիտուտի տնտեսագիտության ֆակուլտետի ուսանողների հետ հանդիպման ժամանակ ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ երբ պրակտիկան լիովին չի զինված գիտական կանխատեսությամբ, նոր գնահատումներով, ապա անխուսափելի են նաև սխալները: Ուստի և այսօր քաղաքատնտես գիտնականները հրավիրված են ստեղծագործության, չուրջ, խորացված աշխատանքի այն հաշվով, որպեսզի նրանք առաջ անցնեն պրակտիկայից: Վերակառուցումը նաև տնտեսագետների հարազատ գործն է: Նա հետաքրքրվեց նաև, թե այժմ արդյոք հաղթահարվե՞լ է տեխնիկական ֆակուլտետների ուսանողների հոռետեսական վերաբերմունքը. պե՞տք են, թե՞ ոչ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը և ընդգծեց, որ այժմ շատ կարևոր են աշխարհըմբռնողություն ունենալը և տեղի ունեցող պրոցեսները հասկանալը:

Տնտեսական, ինչպես և ամեն կարգի այլ կուլտուրաների պրոբլեմների մշակումն ու լուսաբանումը մեր հանրապետության գաղափարախոսական աշխատանքում ևս դարձել են հրատապ, որոնց ձեռնամուխ են եղել մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի մարմինները: Լավ է, որ մամուլը վերակառուցման նոր փուլը ցույց է տալիս որպես դժվարին, բարդ, դիալեկտիկական պրոցես,— վերջերս նշեց Մ. Ս. Գորբաչովը: «Ամենքը պետք է վերակառուցվեն: Հանուն ժողովրդի, սոցիալիզմի արմատական շահերի: Վերակառուցումն այլընտրանք չունի: Մեր ամբողջ հասարակությունը տառապանքով է ձեռք բերել այն»:

Տնտեսական բարձր կուլտուրան շատ բանով կարող է նպաստել, որպեսզի մարդիկ վերակառուցումը չփոխարինեն կոսմետիկայով, կիսատ-պռատ միջոցառումներով, այսպես կոչված՝ ծեփագործական ու ներկարարական աշխատանքներով: Խոսքը սոցիալիզմի մեր ամբողջ շենքի ամրապնդման, մեր սոցիալիստական դեմոկրատիայի ամրապնդման ու կատարելագործման հիմնարար աշխատանքների մասին է: Միայն այդ դեպքում մեր երկիրը, ինչպես մեկ անգամ ևս հռչակվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, իրոք, կդառնա զարգացած պետության տիպար, ամենաառաջավոր էկոնոմիկայի, ամենալայն դեմոկրատիայի, ամենամարդասիրական ու բարձր բարոյականության հասարակություն, որտեղ աշխատավոր մարդն իրեն զգա որպես լիիրավ տեր, կարողանա օգտվել նյութական ու հոգևոր մշակույթի բոլոր բարիքներից, որտեղ հուսալի է նրա զավակների ապագան, որտեղ նա կունենա այն ամենը, ինչ հարկավոր է լիարյուն, բովանդակալից կյանքի համար:

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

**Վ. ՏՈՒՐՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**

ՍՄԿԿ **ԻՐ ԾՐԱԳՐԻ** նոր խմբագրությունում, խիստ կարևորելով ընտանիքի նկատմամբ ավելի մեծ հասարակական ու պետական հոգատարություն դրսևորելու անհրաժեշտությունը, նշել է. «Ընտանիքը կարևոր դեր է խաղում մատաղ սերունդների առողջության ամրապնդման և դաստիարակության, հասարակության տնտեսական ու սոցիալական առաջընթացի ապահովման, ժողովրդագրական պրոցեսների բարելավման գործում: Այստեղ են ձևավորվում մարդու խառնվածքի հիմքերը, աշխատանքի, բարոյական, գաղափարական ու կուլտուրական արժեքների նկատմամբ նրա վերաբերմունքը: Հասարակությունը կենսականորեն շահագրգռված է ամուր, հոգեպես ու բարոյապես առողջ ընտանիքով» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 215):

Լինելով «հարաբերություններ ամուսնու և կնոջ, ծնողների և զավակների միջև» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Երկեր,** հ. 3, «Հայաստան» հրատ., 1987, էջ 34), ընտանիքը, որպես սոցիալական ու սոցիալ-հոգեբանական ընդհանրություն, միավորում է կենսաբանական, տնտեսական, գաղափարաբարոյական և հոգեկան հիմունքներ: Զարգանալով ու փոփոխվելով հասարակության զարգացման ու փոփոխման հետ միասին, ընտանիքը յուրաքանչյուր պատմական փուլում իրականացնում է անանց կարևորության մի ֆունկցիա՝ բուն մարդու արտադրությունը, ցեղի շարունակությունը: Հանդես գալով որպես դաստիարակության սուբյեկտ՝ յուրաքանչյուր ընտանիք այդ ֆունկցիան կատարում է իր սոցիալական ու սոցիալ-հոգեբանական վիճակին, գաղափարաբարոյական հասունությանն ու մանկավարժական գրագիտությանը համապատասխան: Հասարակության առջև ծառացած է ընտանեկան դաստիարակության օպտիմալացման և հասարակական դաստիարակության հետ նրա կապի ամրապնդման խնդիրը, որն անհրաժեշտ է դարձնում փիլիսոփայության, սոցիոլոգիայի, սոցիալական հոգեբանության և մյուս գիտությունների տեսանկյունից ընտանիքի պրոբլեմի հետագա տեսական մշակումը:

Թե՛ ընտանեկան, թե՛ հասարակական դաստիարակությունը գոյություն ունի և գործառում է դիալեկտիկական միասնության ու փոխգործողության մեջ: Նրանք միմյանց հարաբերում են ինչպես առանձնահատուկն ու ընդհանուրը: Լինելով հասարակական դաստիարակության բաղադրամասը, ընտանիքը միևնույն ժամանակ հարաբերականորեն ինքնուրույն է: **Ընտանեկան դաստիարակության գլխավոր սոցիալական նախադրյալը նրա հասարակայնորեն պայմանավորվածությունն ու արժեքավորությունն է:** Տվյալ հետևությունը, մեր կարծիքով, լիովին համապատասխանում է մարքս-լենինյան այն դրույթին, թե դաստիարակությունը միշտ կրել է ու կկրի հասարակական բնույթ, իսկ նրա նպատակներն անմիջական կախման մեջ են գտնվում հասարակության նպատակներից:

Սոցիալիզմի պայմաններում, երբ արմատախիլ են արված ընտանիքի և պետության միջև հակամարտության օբյեկտիվ պատճառները, երբ հաղթահարված են անձնական և հասարակական շահերի միջև եղած հակամարտ հակասությունները, որոնց աղբյուրը մասնավոր սեփականությունն էր, ընտանեկան դաստիարակությունը կոչված է նպաստելու այն բանին, որպեսզի սոցիալիստական հասարակության գաղափա-

այլև գործնական նշանակություն: Դաստիարակությանը՝ որպես երկրի սոցիալ-տնտեսական զարգացման կարևոր գործոններից մեկի, դերի բարձրացման պայմաններում զգալի տեղ է հատկացվում ընտանիքին, որում է իրականացվում անմիջական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունը:

Ելնելով ընտանեկան դաստիարակության առանձնահատկություններից, ծնողական ֆունկցիաները որպես սոցիալիստական հասարակության կողմից ապահովող կարևոր սոցիալական գործունեություն ճանաչելուց, մենք համերաշխվում ենք այն կարծիքի հետ, թե «... երեխաների հասարակական դաստիարակությունը ոչ թե ընտանեկան դաստիարակության այլընտրանքն է, ինչպես համարում էին սոցիալիստ-ուտոպիստները և այլ տեսաբաններն ու մտածողները: Իրենց այդ գործունեությունում այդ երկու ինստիտուտները լրացնում և հարստացնում են միմյանց» (М. Динкова. Тенденции и проблемы формирования, функционирования и развития молодой семьи. В кн. Современная молодая семья—проблемы и тенденции. Материалы международной встречи ученых. София, 1985, часть I, с. 33): Եվ այդ պատճառով այսօր հատուկ մեթոդաբանական ու գործնական նշանակալիություն է ձեռք բերում Ն. Կ. Կրուպսկայայի առաջադրած այն դրույթը, որ «մենք պետք է ձգտենք ստեղծելու երեխաների հասարակական դաստիարակության այնպիսի ձևեր, որոնք երեխաներին չխլեին ծնողներից, բայց միևնույն ժամանակ վերացնեին այժմյան դաստիարակության չարիքը» (Н. К. Крупская, նշվ. աշխ., էջ 113):

Պատմական նոր հիմքի վրա դաստիարակության ամբողջականության լինելիության պրոցեսը պահանջում է կատարելագործել սոցիալական միջավայրը և բարձրացնել դաստիարակչական ներազդման համակարգի արդյունավետությունը, հասնել ընտանեկան և հասարակական դաստիարակության լիակատար օրգանական համադրման՝ հասարակականի առաջատար դերի մեծացման պայմանով: Անհրաժեշտ է ընտանիքի, նախադպրոցական հաստատությունների, դպրոցի, աշխատավորական կոլեկտիվների ու հասարակական կազմակերպությունների համատեղ գործողությունների կազմակերպումը դնել ամուր գիտական հիմքի վրա և դիտել որպես ընտանեկան ու հասարակական հարաբերությունների մյուս տեսակների ներդաշնակ փոխազդեցության միտումի անհրաժեշտ մարմնավորում:

Ընտանեկան և հասարակական դաստիարակության օրգանական միասնության պրոբլեմը ոչ միայն դրանց համաձայնեցման պրոբլեմ է: Մեր կարծիքով, դա նաև փոխկապվածության, փոխլրացման, փոխուժեղացման և փոխհարստացման պրոբլեմն է: Ավելին, դա նաև երեխաների բնավորությունը, եռանդունությունը, հակումները, հետաքրքրություններն ու սովորույթները չիմանալու հետևանքով հատկապես անհատական դաստիարակչական աշխատանքում դրսևորվող սխալները փոխադարձաբար վերացնելու պրոբլեմն է:

Ընտանեկան և հասարակական դաստիարակության դիալեկտիկան արտահայտվում է հակասություններում: Հասարակական կյանքի հակասությունները մշտապես արտահայտում են մարդկանց, դասակարգերի, սոցիալական խմբերի պահանջմունքները, շահերը, նպատակները և դրանց համապատասխանող գործողությունները: Վերջիններս ունեն ոչ միայն սուբյեկտիվ բնույթ, այլև պայմանավորված են հասարակության օբյեկտիվ պայմաններով:

Ընտանեկան և հասարակական դաստիարակության միջև հակասությունների ծագման օբյեկտիվ պատճառների շարքին պետք է դասել դեռևս պահպանված սոցիալ-տնտեսական տարբերությունները՝ քաղաքի և գյուղի միջև, որն արտահայտվում է գյուղում հասարակական դաստիարակության նյութական բազայի թույլ զարգացածությամբ. մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, որը հաճախ դրսևորվում է ֆիզիկական աշխատանքի նկատմամբ քամահրանքով, ամեն մի գնով բարձրագույն կրթություն ստանալու ձգտումով: Հակասությունների օբյեկտիվ աղբյուր են նաև՝ ժողովրդագրական անհամամասնությունը, որն անդրադառնում է ընտանիքի կայունության և կառուցվածքի վրա (ոչ լրիվ ընտանիք, սակավազավակ ընտանիք, «արտամուսնական» ընտանիք). ընտանեկան հանգստի կազմակերպման, ընտանիքի կոմունալ և կենցաղային սպասարկման ցածր մակարդակը. երեխաներին ամենօրյա, ուժերի ներածին չափ, հասարակայնորեն կազմակերպված աշխատանքային գործունեության մեջ ներգրավելու նյութական բազայի անբավարարությունը (հատկապես քաղաքում). երիտասարդ ընտանիքների նյութական դժվարությունները, բարեկարգ բնակարանով, մանկապարտեզներով և այլնով նրանց ապահովելու հարցում եղած թերությունները:



Իսկ ընտանեկան և հասարակական դաստիարակության միջև հակասությունների սուբյեկտիվ պատճառները, մեր կարծիքով, հիմնականում կարելի է հանգեցնել երեք խմբերի: Առաջին խումբը կազմում են այն պատճառները, որոնք ծնունդ են երեխաների և դեռահասների վրա ընտանիքի և հասարակության դաստիարակչական ներազդման հնարավորությունների ու մեթոդների տարբերության, ծնողների անհրաժեշտ մանկավարժական կուլտուրայի բացակայության, դաստիարակչական հաստատությունների կադրերի թույլ մասնագիտական պատրաստվածության: Երկրորդը այն պատճառներն են, որոնք առաջացել են ընտանիքի կամ հասարակական դաստիարակչական հաստատության՝ իրենց օպտիմալ մոդելներին անհամապատասխանելուց: Պատճառների երրորդ խմբի մեջ մտնում են այ ն անհամապատասխանությունները, անհամաձայնությունները, որ դրսևորում են նրանք դաստիարակի ֆունկցիաներ կատարելիս:

Պատճառների առաջին խմբի հետևանք են դառնում այն հակասությունները, որ առաջանում են ընտանիքում և, մյուս կողմից, նախադպրոցական հիմնարկություններում, դպրոցում, աշխատավորական կոլեկտիվում, հասարակական կազմակերպություններում և այլուր անհատին ներկայացվող պահանջների անհամապատասխանությունից: Դաստիարակչական ինստիտուտների նման անհամաձայնեցվածությունն անդրադառնում է դաստիարակության արդյունքների վրա: Նրա վերացումը պահանջում է ամրապնդել ընտանեկան ու հասարակական դաստիարակության միասնության գիտական, բովանդակային և կազմակերպական հիմքերը, բարձրացնել աշխատավորական կոլեկտիվի, հասարակական կազմակերպությունների պատասխանատվությունն ընտանիքի կյանքի բարենպաստ պայմաններ ստեղծելու, ծնողական ֆունկցիաներ իրականացնելու համար:

Որպես երկրորդ խումբ պատճառների հետևանք հանդես են գալիս այն հակասությունները, որոնք առաջանում են սոցիալապես կազմալուծված, իրենց սոցիալական ֆունկցիաները չկատարող ընտանիքների բացասական ազդեցությունից, ընտանիքներ, որոնցում ներքին միասնությունը և համախմբվածությունը խախտված են և թույլ են տալիս շեղումներ սոցիալիստական բարոյականության նորմերից: Դաստիարակության պայմանները սահմանելիս, համաձայն ավանդական տիպաբանության, նրանց վերագրում են արտաքնապես բարեհաջող կամ անբարեհաջող ընտանիքների, սակայն, գործնական տեսակետից, մեզ ավելի նպատակահարմար է թվում այն տիպաբանությունը, որը ելնում է օպտիմալ մոդելից նրանց շեղման աստիճանից: Նման մոտեցման դեպքում տվյալ ընտանիքները կարելի է տարբերակել որպես՝ դաստիարակչական առումով անկայուն. դաստիարակչական առումով թույլ, ծնողների և երեխաների միջև կապը կորցրած. դաստիարակչական առումով թույլ, մշտապես կոնֆլիկտային մթնոլորտ ունեցող. դաստիարակչական առումով թույլ, ագրեսիվ-բացասական մթնոլորտ ունեցող. սանձարձակ (մարգինալ), ալկոհոլային կամ սեռական բարոյազրկմամբ. իրավախախտ. հանցավոր. հոգեկան խանգարումներով (Գ. Մ. Մենկովսկու տիպաբանությունը: Տե՛ս Г. М. Меньковский. Неблагополучная семья и противоправное поведение подростков. «Социологические исследования», 1982, № 2, с. 106): Այդ բնույթի ընտանիքներում դաստիարակությունը հաճախ հակասության մեջ է մտնում հասարակության պահանջմունքների ու նպատակների հետ, ձևախախտումներ առաջացնում երեխաների արժեքային կողմնորոշումներում, շարժառիթների կառուցվածքում, ինքնավերահսկման մեխանիզմում, վարքագծային ստերեոտիպերում: Նշված հետևանքները կանխելու համար անհրաժեշտ է գիտականորեն հիմնավորված, տարբերակված մոտեցում սոցիալապես կազմալուծված ընտանիքների նկատմամբ: Նրանց երեխաները պետք է գտնվեն հասարակական դաստիարակության այնպիսի ինստիտուտների ուժեղացված ուշադրության կենտրոնում, ինչպիսիք են նախադպրոցական հիմնարկությունները, դպրոցը, աշխատավորական կոլեկտիվը, հասարակական կազմակերպությունները:

Օպտիմալ մոդելներին չեն համապատասխանում նաև ոչ լրիվ ընտանիքները, որտեղ ամուսնալուծության հետևանքով ծնողներից մեկի (հաճախ հոր) բացակայությունը ոչ միայն աղքատացնում է դաստիարակչական ազդեցությունը, այլև թուլացնում ներընտանեկան հարաբերությունները՝ ընտանեկան դաստիարակության կարևոր սոցիալ-հոգեբանական գործոններից մեկը: Օպտիմալ մոդելներին դաստիարակչա-

կան հաստատությունների անհամապատասխանության պատճառ կարող են լինել դրանց կառուցվածքի և գործունեության ոճի թերությունները:

Երրորդ խումբ պատճառների հետևանքը հակասություններն են սոցիալ-տնտեսական պահանջմունքների, հասարակության գաղափարաքաղաքական պահանջների և ամուսնական զույգերի վերարտադրական կողմնորոշումների*, ծնողների կողմից երեխաների գործառական արժեքի խեղաթյուրված ընկալման միջև:

Սակավազավակության պայմաններում ծնողների համար երեխաների ավելի ու ավելի հոգեբանական, հուզական, հաղորդակցային, եսապաշտպանական արժեքի վերածվելը հնարավոր է դարձնում հարմարվողական «սեփականատիրական» տրամադրությունների երևան գալը: Դրանք հետևանք են ընտանիքի կողմից դաստիարակության նպատակների սխալ ըմբռնման և հանգեցնում են հասարակության հանդեպ ծնողական հոգատարության ու ծնողական պարտքի ներդաշնակ միասնության խախտմանը: Դրա հետևանքով իրենց զգացնել են տալիս եսասիրության, խնամառության, սպառողականության, ինֆանտիլիզմի դրսևորումները:

Երեխաների նկատմամբ ծնողների հիվանդագին սերը, նրանց քմահաճույքներին անսահմանորեն տեղիք տալը, նրանցից մի մասի շրջանում ի վնաս հասարակության շահերի սեփական օգուտի սկզբունքների արմատավորումը երեխաներին հանգեցնում է այն բանին, որ նրանք չեն կարողանում սահմանափակել իրենց պահանջմունքները, ապագայում ստեղծում են մի տեսակ ճեղքվածք արմատավորված հակվածությունների և սեփական աշխատանքի հաշվին դրանց բավարարման հնարավորությունների միջև: Այս նույն երևույթներն են ընկած ընտանիքի և դպրոցի տարանջատված գործողությունների հիմքում՝ սովորողների մասնագիտական կողմնորոշման հասարակայնորեն նշանակալից շարժառիթներով մասնագիտության ընտրության առումով: Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, շատ ծնողներ դեռևս երեխաներին կողմնորոշում են բարձրագույն կրթություն ստանալուն, մինչդեռ հասարակությունը առաջադրում է նաև բարձրորակ բանվորական կադրերի պահանջարկ: Նման միտումները հատկապես ուժեղ են բարձրագույն կրթություն ունեցող ծնողների մոտ, որոնց շուրջ 90 տոկոսը ցանկանում է, որ իրենց երեխաները դառնան բուհերի ուսանողներ:

Տվյալ երևույթը, չնայած հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի շրջանակներում անցկացվող միջոցառումներին, դեռևս ոչ քիչ տարաձայնություններ է առաջացնում ընտանիքի և դպրոցի միջև: Դրա պատճառներից է և՛ պրոֆտեխկրթության ուսումնարանների ցածր վարկը և՛ պրոֆտեխկողմնորոշման շատ դպրոցներում աշխատանքի ոչ բավարար կշռադատվածությունը, որը, որպես կանոն, գործնականում հանգեցվում է հետ մնացող, վատ սովորող աշակերտներին պրոֆտեխուսումնարաններ և գործարաններ ուղարկելուն: Նման մոտեցումը հաճախ խորացվում է նաև դպրոցի ադմինիստրացիայի կիրառած պարտադիր բնույթի միջոցառումներով:

Անշուշտ, մեր կատարած խմբավորումը չի ընդգրկում ու չի կարող ընդգրկել ընտանեկան և հասարակական դաստիարակության միջև եղած բոլոր հակասությունները, որովհետև, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «կենդանի հակասությունները շատ ու շատ անգամ ավելի հարուստ, ավելի բազմակողմանի, ավելի բովանդակալից են, քան սկզբից կարող է թվալ մարդու բանականությանը» (**ԵԼԺ**, հ. 47, էջ 266): Սակայն, ըստ էության, ընտանեկան և հասարակական դաստիարակության միջև չկան այնպիսի հակասություններ, որոնք անհնարին լինի հաղթահարել նպատակամետ իրագործվող սոցիալական քաղաքականության միջոցով, որը, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. հոկտեմբերյան պլենումում նշեց Մ. Ս. Գորբաչովը, «կուսակցությունը... դիտում է որպես երկրի տնտեսական զարգացման արագացման, մասսաների աշխատանքային և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման հզոր միջոց, որպես հասարակության քաղաքական կայունության, նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման կարևոր գործոն»: Դրա ապացույցն է հասարակական կյանքի վերակառուցման, սոցիալական մթնոլորտի բարելավման, հասարակության դեմոկրատացման՝ երկրում ծավալված պրոցեսը:

* *Վերարտադրական կողմնորոշումները անհատի վարքագծային ակտերի, դատողությունների, գնահատականների ու դիրքորոշումների մի կոմպլեքս է, որն արտահայտում է նրա փաստացի, հուզական և գիտակցական վերաբերմունքը երեխաների ծննդի նկատմամբ:*

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Վ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ**

ԶԱՐԳԱՑՈՂ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀՐԱՏԱՊ պրոբլեմներից է գյուղատնտեսության աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացման խնդիրը: Պրոբլեմի տեսական նշանակությունը և գործնական արժեքը որոշվում է սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում ժողովրդական տնտեսության ագրարային հատվածի դերով, գյուղի սոցիալական ոլորտի գիտական կառավարման ու կոնկրետ գյուղատնտեսական օբյեկտների սոցիալական պլանավորման և օպտիմալ գործունեության մեջ աշխատավորների ակտիվ մասնակցությամբ:

Առանց արդի գյուղատնտեսական արտադրության պահանջներին համապատասխանող աշխատողի ձևավորման, հնարավոր չէ կենսագործել պարենային ծրագիրը, անշեղորեն բարձրացնել սովետական ժողովրդի բարեկեցությունը: ՍՄԿԿ XXVII համագումարը նորովի առաջադրեց մարդկային գործոնի սոցիալական ռեզերվների բացահայտման և ակտիվացման գաղափարը: Որքան էլ մեծ լինի ագրոարդյունաբերական համալիրում տեխնիկատեխնոլոգիական գործոնների դերը, այնուամենայնիվ, «... առաջադիմության գլխավոր շարժիչը, նրա հոգին եղել է, կա և կմնա մարդը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 43): Արդի գյուղատնտեսական արտադրությանն անհրաժեշտ են պրոֆեսիոնալ բարձր վարպետությամբ և նորարարական եռանդով աշխատողներ:

Պրոբլեմի հասարակական հնչեղությունը նկատի ունենալով, մեր հանրապետությունում կատարված սոցիոլոգիական հետազոտությունների նյութերի և վիճակագրական տվյալների հիման վրա պարզաբանենք գյուղատնտեսության աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացման հիմնական ուղիները: Դրանք են՝ կուսակցության նպատակաուղղված սոցիալական քաղաքականությունը, անհատի հոգևոր զարգացումը, սոցիալական արդարության ապահովումը, բաշխման հարաբերությունների կատարելագործումը; սոցիալիստական մրցության ծավալումը, տնտեսությունների կառավարմանն ու հասարակական գործերին աշխատավորների մասնակցության ընդլայնումը:

Մարդկային գործոնի դերի մեծացումը պահանջում է ամենից առաջ բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցում: Վերջին տարիներին քիչ աշխատանք չի կատարվել մասնագետների պատրաստման և տնտեսություններում նրանց ամրացման ուղղությամբ: Եթե 1970 թվականին հանրապետության ուսումնական հաստատությունները գյուղատնտեսության պրոֆիլի 2,4 հազար մասնագետներ են պատրաստել, ապա այժմ այդ թիվը մոտենում է չորս հազարի: Սակայն մասնագետների քանակական աճը ոչ միշտ է ուղեկցվել հիմնավոր տեսական գիտելիքների և գործնական ունակությունների տիրապետող կադրերի պատրաստմամբ:

Այդ հակասության հաղթահարման ուղին բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցման հիմնական ուղղություններում առաջադրվող խնդիրների իրականացումն է: Պահանջվում է լրջորեն կատարելագործել գյուղական դպրոցների սովորողների մասնագիտական կողմնորոշումը, որը թույլ կտա հաղթահարել ոչ օպտիմալ մասնագիտական համակարգի վերարտադրության միտումը, ինչպես նաև կանխել բազմաթիվ նեգատիվ սոցիալ-հոգեբանական, բարոյական հետևանքների առաջացումը: Մինչդեռ ուսումնասիրությունները վկայում են, որ այդ աշխատանքը գյուղական դպրոցներում գտնվում է ոչ բավարար մակարդակի վրա: Ախուրյանի շրջանի դպրոցների բարձր դասարանների վերջերս հարցման ենթարկված հազար աշակերտներից մոտ կեսը չի պատկերացնում, թե ինչպիսի փոփոխություններ տեղի կունենան մոտ ապագայում իրենց գյուղում, տնտեսությունում, 52 տոկոսը չգիտի ինչպիսի մասնագիտությունների կարիք ունի իրենց տնտեսությունը, իսկ 51 տոկոսը ծանոթ չէ կամ պատկերացում չունի գյուղատնտեսական այս կամ այն արդի պրոֆեսիայի մասին: Բացի դրանից, աշակերտների միայն 45,5 տոկոսը ցանկություն հայտնեց դպրոցն ավարտելուց հետո ապրել և աշխատել գյուղում: Դա բացատրվում է մի ամբողջ շարք սոցիալական և հոգեբանական գործոններով, որոնցից մեկն էլ դպրոցներում «Աշխատանքի ուսուցում» առարկայի դասավանդման ցածր մակարդակն է: Այն հաճախ հանձնարարվում է այնպիսի անձանց, որոնք չունեն համապատասխան կրթություն: Ավելին. ծրագրերը ծանրաբեռնված են ընդհանուր բնույթի հարցերով, որոնք քիչ են կապված գյուղատնտեսական արտադրության կոնկրետ խնդիրների հետ: Գործը մեծապես կշահի, եթե մանկավարժական բուհերում ստեղծվեն հատուկ բաժիններ՝ հատկապես գյուղական դպրոցներում աշխատանքի ուսուցման և ընդհանուր տեխնիկական առարկաների գծով մասնագետներ պատրաստելու համար, և այդ նպատակով ավելի շատ արտամրցութային տեղեր հատկացվեն:

Մասնագիտական կողմնորոշման և աշխատանքային դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքների կատարելագործման պրոցեսի կատարելագործման նպատակով որոշ դպրոցներում ստեղծվել են լոռոդինացիոն խորհուրդներ, կաբինետներ, սրահներ: Այս փորձը լայն տարածման կարիք է զգում: Միաժամանակ այդ խորհուրդների դերը զգալիորեն կմեծանա, եթե նրանց կազմում ընդգրկվեն որակյալ հմուտ մանկավարժներ, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ, արտադրության ոլորտի առաջավոր կազմակերպիչներ:

Աշխատանքի ուսուցման առարկայի որակի բարձրացման գործում արդյունավետ օգնություն կարող են ցույց տալ տնտեսությունները: Նրանցից շատերը ստանձնել են դպրոցների շեֆությունը, ստեղծում են մասնագիտական կողմնորոշման կաբինետներ, սրահներ, աշակերտական-արտադրական բրիգադներ, աշխատանքի և հանգստի ճամբարներ: Սակայն նույնը չի կարելի ասել դպրոցների արհեստանոցների վիճակի մասին, որոնք բավարար մակարդակով չեն ապահովվում համապատասխան գործիքներով և նյութերով:

Գյուղի աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացմանը նպաստում է նրանց մասնագիտությունների կառուցվածքի օպտիմալ վերարտադրումը: Մարդկանց պետք է ավելի լայն հնարավորություններ ընձեռել՝ աշխատելու ըստ ընդունակությունների, ստացած կրթության և կոչումի: Պատրաստել այնպիսի կադրեր, որոնց կարիքն ունեն տնտեսությունները: Ուսանողը նախքան ավարտելը պետք է իմանա, թե որտեղ է իրեն աշխատելու: Դա սոցիալական գործունեության ինտենսիվացման, աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր միջոց է:

Գյուղատնտեսական արտադրության մեջ աշխատողների մի մասն իր գիտելիքները հարստացնելու ցանկություն չի դրսևորում: Դա դժվարացնում է գյուղում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը: Միայն աշխատողի հանրակրթական և պրոֆեսիոնալ բարձր պատրաստությունը թույլ կտա մեծ արդյունավետությամբ օգտագործել առկա նյութատեխնիկական հնարավորությունները: Հանրապետության մի քանի շրջաններում (Ախուրյան, Արթիկ, Էջմիածին և այլն) մեր կատարած ուսումնասիրությունները վկայում են, որ առաջին կարգի տրակտորիստ-մեքենավարի աշխատանքի արտադրողականությունը 20—25 տոկոսով բարձր է, քան 3-րդ կարգի մեխանիզատորինը: Բարձր որակյալ աշխատողները, ի տարբերություն մյուս սոցիալ-



պրոֆեսիոնալ խմբերի, ավելի մեծ ակտիվությամբ են մասնակցում հասարակական կազմակերպությունների գործունեությանը, քաղաքական ուսուցմանը:

Մարդկային գործոնի ակտիվացման վրա իրենց կնիքն են դնում տերիտորիալ առումով գյուղի հարաբերական մեկուսացվածությունը, կուլտուրական, հոգևոր, ինչպես նաև նյութական պահանջմունքների բավարարման հնարավորությունների սահմանափակվածությունը: Այստեղ յուրաքանչյուր բնակչի կյանքն ու գործն ընթանում են միևնույն միջավայրում, նույն մարդկանց շրջապատում: Աշխատողների անձնական կյանքն ու կենցաղը հագեցված չեն պատշաճ հոգևոր մթնոլորտով:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գյուղի աշխատողների՝ մշակույթին հաղորդակցվելու հիմնական միջոցը հեռուստատեսությունն է, որի հաղորդումներին նրանք հատկացնում են իրենց ազատ ժամանակի մեկ երրորդը, գեղարվեստական գրականության և մամուլի ընթերցմանը՝ մոտ 6 տոկոսը, կինոդիտումներին՝ ավելի պակաս, գեղարվեստական ինքնագործունեությանը և սպորտային միջոցառումներին՝ 4—5 տոկոսը:

Ակներև է, որ առանց նպատակասլաց սոցիալական քաղաքականության և հիմնավորված տնտեսական ստրատեգիայի՝ հնարավոր չէ բարձրացնել աշխատողների սոցիալական ակտիվությունը: Էկոնոմիկայի սոցիալական կողմնորոշման ուժեղացումը և մարդկային գործոնի ակտիվացումը փոխկապակցված երևույթներ են: «Տեխնոկրատական մոտեցումների հայտնի հակումը,— նշում է ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— թուլացրել է ուշադրությունը արտադրության սոցիալական կողմի, կենցաղի, ազատ ժամանակի նկատմամբ, ինչը չէր կարող չհանգեցնել աշխատանքի արդյունքներով աշխատավորների շահագրգռվածության նվազման, կարգապահության թուլացման և այլ բացասական երևույթների» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 62)**:

Համագումարը սուր քննադատության ենթարկեց սոցիալ-կուլտուրական ոլորտի զարգացման համար ռեսուրսների հատկացման, այսպես կոչված, «մնացորդային» սկզբունքը և խնայողության հակումները աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման ասպարեզում: Դա նվազեցնում է մարդկանց շահագրգռվածությունը հանրային արտադրության զարգացման նկատմամբ, թուլացնում նրանց ստեղծագործական ակտիվությունը: Աշխատանքային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը հրատապ խնդիր է, որը շտապ լուծում է պահանջում:

ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում դրվատանքի խոսք ասվեց Ախուրյանի շրջանի Ժդանովի անվան կոլտնտեսության դրական փորձի մասին, ուր զգալի ուշադրություն են դարձնում կոլեկտիվի սոցիալական և հոգևոր պահանջմունքների նկատմամբ: Զգալի տեղաշարժեր են կատարվել գյուղի աշխատողների արտադրական և կուլտուր-կենցաղային պայմանների մեջ: Ծահագործման են հանձնվել նոր մանկապարտեզ, դպրոց, ակումբ, ֆերմաներում ամենուրեք գործում են կարմիր անկյուններ: Հիրավի, այստեղ գործունեության կիզակետում մարդն է, նրա հարանուն հետաքրքրությունները, նախասիրությունները, ձգտումները:

Գյուղի աշխատողների պահանջմունքների և շահերի խոր ուսումնասիրումը, նրանց համար հարմարավետ բնակարանային ու կենցաղային պայմաններ ստեղծելու, ազատ ժամանակը խելամտորեն կազմակերպելու, առողջությունը պահպանելու և ամրապնդելու նկատմամբ հոգատարությունը աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության վերելքի, ագրարային նոր տիպի աշխատողի ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման կարևոր միջոց են:

Ակտիվ ապրելակերպի արմատավորումը ենթադրում է ամենից առաջ գործի նկատմամբ ստեղծարար մոտեցում, հասարակական աշխատանքում ակտիվության բարձրացում, միջանձնային հարաբերությունների ընդլայնում ու հարստացում: Աշխատողի գործնական արարումների բովանդակության ուժեղացումը, անշուշտ, պայմանավորված է հանրակրթական և պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակով, այն անընդհատ կատարելագործելու գիտակցումով:

Ուսումնասիրությունները վկայում են, որ գյուղատնտեսության մասնագետների և ղեկավար աշխատողների 50 տոկոսը գործի մեջ է տեսնում կյանքի իմաստը, ինքնահաստատվելու միջոցը: Մեկ երրորդի համար աշխատանքը կենսական խնդիր է, պահանջմունքների բավարարման անհրաժեշտություն՝ չժխտելով բարոյական բա-

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում առանձնահատուկ նշվեց աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացման ևս մեկ ասպարեզ: Դա աշխատանքային գործունեության կոոպերատիվ բազմազան ձևերի արմատավորման ու լայն տարածման խնդիրն է, որի լուծումը հնարավորություն կտա առավել լրիվ բավարարել պարենային և ոչ պարենային բազմապիսի ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքները, ինչպես նաև լրացուցիչ պայմաններ ստեղծել էկոնոմիկայի ոլորտում դեմոկրատիզմի զարգացման համար, մարդու հնարավորությունների և ունակությունների լավագույն իրացման, աշխատանքային ու ստեղծագործական նախաձեռնությունների խթանման համար: Ինչպես նշվեց պլենումում, «Սխալ վերաբերմունք կար կոոպերատիվ սեփականության նկատմամբ, որը պատկերվում էր որպես ինչ-որ «երկրորդ տեսակի» և անհեռանկար մի բան: Այս ամենը լուրջ հետևանքներ էր ունենում ագրարային և սոցիալական քաղաքականության մեջ, վարչարարություն ծնում կոլտնտեսությունների հետ հարաբերություններում: Այն ի վերջո, հանգեցրեց արհեստագործական կոոպերացիայի վերացման: Նաև լուրջ մոլորություններ եղան անձնական օժանդակ տնտեսության և անհատական աշխատանքային գործունեության վերաբերյալ հայացքների մեջ, ինչը՝ նույնպես տնտեսական ու սոցիալական քիչ վնաս չհասցրեց»:

Գյուղատնտեսության աշխատողների սոցիալական ակտիվության բարձրացումը պահանջում է արտադրության մեջ տարբեր կատեգորիայի աշխատողների խելամիտ պահանջմունքների և շահերի առավել ճիշտ հաշվառում, անհատի հետագա զարգացման համար անհրաժեշտ պայմանների ստեղծում՝ հանուն սոցիալական հավասարության շահերի, մարդու ֆիզիկական, պրոֆեսիոնալ, հոգևոր ու բարոյական ուժերի առավելագույն օգտագործման: Այդ պրոբլեմի լուծումը պահանջում է ոչ միայն անհրաժեշտ արտաքին (տնտեսական, սոցիալական, կազմակերպչական) նախադրյալների ստեղծում, այլև բուն աշխատողի հոգեբանության, քաղաքական և տնտեսական մտածողության մեջ արմատական բեկման, գործի նկատմամբ գիտակցական, նախաձեռնողական վերաբերմունքի ուժեղացում: Գյուղատնտեսության աշխատողի սոցիալական ակտիվությունը ինքնանպատակ չէ, այն ենթարկված է մեր երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի արագ զարգացմանը, այդ ոլորտի արմատական վերակառուցմանը:

---



# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱԶՆԻՎ ԵՎ ԱՆԱՂԱՐՏ ԿԵՐՊԱՐԻ ՀԱՄԱՐ

**Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
**ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահ**

Մեր ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացման ստրատեգիայի, մեր ողջ աշխատանքի վերակառուցման կուրսի իրականացման էական պայմանը ՍՄԿԿ XXVII համագումարը համարեց մարդկային գործոնի ակտիվացումը: Սա մեր հասարակական ու տնտեսական կյանքի կառավարման համակարգի, ամենից առաջ՝ կուսակցական կազմակերպությունների խնդիրն է:

Մարդկային գործոնի ակտիվացման, մասսաների վրա կուսակցության ներգործության ուժեղացման գրավականը ոչ թե կոչերն ու լոզունգներն են, այլ, ամենից առաջ, այդ նույն մասսաների հետ ձուլվելու, նրանց հոգսերով ու ձգտումներով ապրելու, վստահությունն ու աջակցությունը նվաճելու կոմունիստների շնորհքն ու կարողությունը, անձնական ազնիվ ու անբասիր օրինակը: Հիշենք Վ. Ի. Լենինի խորհուրդն այն մասին, որ մասսաների մեջ կոմունիստը պետք է աշխատի «ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով» (**ԵԼԺ, հ. 7, էջ 17**):

ՍՄԿԿ XXVII համագումարը, Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը առաջին պլան մղեցին կուսակցականի ազնիվ ու անաղարտ կերպարի համար մղվող պայքարը: Լինել կոմունիստ՝ նշանակում է ազնվորեն ու անմնացորդ պայքարել կուսակցության դիրեկտիվների կատարման համար, անզիջում լինել մեր կյանքի բացասական երևույթների, այդ թվում ստի ու կեղծիքի, պահպանողականության ու քարացածության, ինքնագոհության ու գունազարդման, ստախոսության ու հանդուրժողականության, բյուրոկրատիզմի ու պարազիտիզմի երևույթների հանդեպ, ստեղծել առողջ բարոյա-հոգեբանական մթնոլորտ յուրաքանչյուր կազմակերպությունում և կոլեկտիվում: ՍՄԿԿ XXVII համագումարը պահանջեց, որպեսզի կուսակցական ակտիվը, բոլոր կոմունիստները տիրապետեն բոլշևիզմի պանծալի ավանդույթներին, դաստիարակվեն նրանցով:

Կոմունիստական համոզվածություն և կոփվածք ունեցող կուսակցականի համար չկան անհաղթահարելի դժվարություններ, անելանելի վիճակ, կյանքի ոչ մի գայթակղություն չի կարող նրան շեղել ընտրած ուղուց: Սակայն, ցավոք, լիակատար քաղաքական հասունություն ունեն ոչ բոլոր կոմունիստները: Այն, որպես կանոն, ձեռք է բերվում աշխատանքում և պայքարում, իսկ այդ ուղիով բոլորը չէ, որ անցել են: Կան նաև կոմունիստներ, որոնք վատ չեն աշխատում, անձնական կյանքում համեստ են, բայց և չունեն ակտիվ քաղաքական դիրքորոշում, վճռական պահին մի կողմ են քաշվում, դրսևորում հաշտվողականություն բացասական երևույթների նկատմամբ: Այո՛, նրանք անձամբ որևէ չարիք չեն գործում, սակայն իրենց անվճռականությամբ և անտարբերությամբ օբյեկտիվորեն նպաստում են բացասական երևույթների և նույնիսկ չարագործությունների տարածմանը:

Հին ճշմարտություն է, որ չարիքը ներելը պակաս հանցագործություն չէ, քան

այն կատարելը: Այսպիսի մարդկանց անհրաժեշտ է դաստիարակել ու վերադաստիարակել, նրանց տոգորել քաղաքական ակտիվությամբ: Կան նաև կոմունիստներ, ովքեր կուսշարքեր են եկել ոչ թե համոզմունքների ու խղճի թելադրանքով, այլ շահադիտական ակնկալիքներով ու կարիերիստական նպատակներով: Նրանց մոտ սրբություններ չկան, պարտքի և պատասխանատվության, պատվի և ազնվության հասկացությունները նրանց խորթ են: Ահա և այդպիսիները կարող են և չարաշահել իրենց պաշտոնը, խախտել կուսակցական ու պետական կարգապահությունը, ոտնձգություններ կատարել հանրային ունեցվածքի նկատմամբ, անաշխատ եկամուտներ կորզել, արատավորել կոմունիստի բարձր կոչումը: Կուսշարքերում նրանց գտնվելը անհամատեղելի է կուսակցական կյանքի լենինյան նորմերի, ՍՄԿԿ կանոնադրության պահանջների հետ: Այդ պատճառով վերջին հինգ տարիներին ՍՄԿԿ շարքերից վտարվել է շուրջ 430 հազար մարդ, որից 2.930-ը մեր հանրապետությունում:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո կուսկազմակերպությունները նկատելիորեն ուժեղացրել են պահանջկոտությունը ղեկավար կադրերի նկատմամբ: Դրա վկայությունն է հենց թեկուզ այն փաստը, որ միայն 1986 թ. պաշտոնեական դիրքը չարաշահելու, հանրային ունեցվածքի հափշտակության ու կաշառակերության համար կուսշարքերից վտարվել են «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Ս. Խաչատրյանը, «Մարմարիկ» կոմբինատի դիրեկտոր Ն. Խոջոյանը, «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորման արհկոմի նախագահ Ֆ. Սուջյանը, Երքաղսովետի կոոպերատիվ շինարարության վարչության ինժեներ Ժ. Ասլանյանը, «Հայկոոպի» ավագ տեսուչ Խ. Մուրադյանը, «Մանկական աշխարհ» միավորման կադրերի բաժնի վարիչ Ն. Եդոյանը, «Հայոսկերչատի» խանութի վարիչ Լ. Հովակիմյանը, № 23 ճաշարանի դիրեկտոր Հ. Աբաջյանը, Մասիսի շրջանի № 36 ԾՄՕ-ի արհկոմի նախագահ Վ. Մկրտչյանը, Երևանի № 17 դպրոցի դիրեկտոր Ռ. Փոթիկյանը, մանկավարժական ինստիտուտի դասախոս Ա. Վարդանյանը, Արթիկի շրջանի «Նոր կյանք» կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Ծիկանյանը, Աբովյանի շրջանի Առինջի գյուղսովետի գործկոմի նախագահ Հ. Մկրտչյանը և ուրիշներ: Նման փաստերը մեզ պարտավորեցնում են մշտապես հիշել ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովի արտահայտած այն միտքը, որ հասարակության մեջ հատկապես սուր է ընկալվում կուսակցության անդամների և առաջին հերթին ղեկավարների բարոյական նկարագրին առնչվող ամեն ինչ: Նա կուսակցական մարմինների և կազմակերպությունների խնդիրը համարեց վերականգնել կոմունիստ ղեկավարի անաղարտ ու ազնիվ նկարագիրը, նկարագիր, որի վրա որոշակի ստվեր են նետել մի շարք վերասերվածների հանցավոր արարքները:

ՍՄԿԿ XXVII համագումարը անհրաժեշտ համարեց ուժեղացնել պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ, նրանց առավել պատասխանատու դարձնել կուսակցության գործերի համար, զարգացնել նրանց հասարակական-քաղաքական ակտիվությունը, բարձրացնել նրանց քաղաքական հասունությունն ու ամրացնել կոփվածքը: Այդ պահանջները իրականացնելու համար մի շարք փոփոխություններ մտցվեցին կուսակցության կանոնադրության մեջ: Դրանց թվում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ասպարեզում առավելագույն ավանդ մուծելը, պայքարը սոցիալիստական ապրելակերպին խորթ հայացքների ու բարքերի, շքամոլության, գոռոզամտության, ինքնահանգստացման, աչքակապության, բյուրոկրատիզմի, տեղայնության, գերատեսչականության դեմ, սոցիալական արդարության սկզբունքների հաստատումը, օրինավորությունը, համեստությունը, մարդկանց նկատմամբ զգայուն ու ուշադիր վերաբերմունքը, աշխատավորների պահանջներին ու կարիքներին ժամանակին արձագանքելը, կուսակցության ու ժողովրդի հանդեպ ճշմարտացի և ազնիվ լինելը:

Իսկական կոմունիստին կարիք չկա հիշեցնելու նրա կուսակցական, քաղաքացիական պարտականությունների կատարման մասին, նա դրանք կատարում է իր գիտակցության ու խղճի թելադրանքով, կամովին, առանց կոչերի ու հորդորների: Սակայն բոլոր կոմունիստները չէ, որ ձևավորվել են որպես կուսակցության քաղաքական մարտիկներ: Այս պարագայում նրանց պետք է օգնության գան սկզբնական կուսկազմակերպությունները: Նրանք պարտավոր են դաստիարակել կոմունիստներին կուսակցության գործի նկատմամբ նվիրվածության, գաղափարական համոզվածության, կոմունիստական բարոյականության ոգով, մշտապես հոգ տանել նրանց ավան-



գարդային դերի բարձրացման, կենցաղում նրանց օրինակելի վարքի մասին, լսել հաշվետվությունները կանոնադրական պարտականությունների և կուսակցական հանձնարարությունների կատարման վերաբերյալ: Այդ հարցերը չպետք է իրենց տեսադաշտից դուրս թողնեն կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեները, որոնք միավորում և ուղղություն են տալիս սկզբնական կուսկազմակերպություններին, իրենց գործունեության շրջանակներում ապահովում կուսակցության քաղաքականության իրականացումը: Յուրաքանչյուր թերացում այս կարևոր գործում աններելի է և հանգեցնում է ծանր հետևանքների: Այսպես, հեռուստատեսության և ռադիոյի պետական կոմիտեի կոլեգիայի նախկին անդամ, կոմունիստ Ա. Մանդալյանը տարիների ընթացքում հաջողությամբ պաշտոնական սանդուղքով վեր էր բարձրանում և որքան շատ էր բարձրանում, այնքան շուտ էր մոռանում սեփական պարտքի ու պարտականությունների մասին, այնքան իրեն ազատ ու անկաշկանդ էր զգում: Վերջին տարիներին, հանդիսանալով կոմիտեի հեռուստատեսային ծրագրերի դիրեկտորը, նա պետական հիմնարկության գործերը սկսեց տնօրինել յուրովի՝ ոտնահարելով օրինականության նորմերը: Նա անվերապահորեն հովանավորում էր յուրայիններին, իր հլու կամակատարներին, հալածում «անհնազանդ», սեփական կարծիք և արժանապատվություն ունեցող մարդկանց: Այդ քմահաճ վերաբերմունքի տեր անձնավորությունը նույնիսկ մի քանի տարի եղել է ծրագրերի դիրեկցիայի սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը: Ինչ խոսք, նա գիտեր նաև աշխատել և տպավորություն ստեղծել, գիտեր երբ և ինչպես գործունյա մարդու համբավ ձեռք բերել: Այդ ճանապարհով նա կարողացավ դուրս մնալ կոմիտեի ղեկավարության ու կուսկազմակերպության հսկողությունից և բռնեց չարաշահումների ուղին: Նա տարիներ ի վեր խիստ բարձր դրույքներով հոնորարներ է ստացել և այդպիսի առատությամբ վճարել նաև իր յուրայիններին: ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի աշխատողներից և հրավիրված մասնագետներից քիչ ջանքեր չպահանջվեցին Ա. Մանդալյանի իսկական դեմքը բացահայտելու համար, և նա այժմ վտարված է կուսշարքերից:

Չարիքը պատժվեց, սակայն չհաղթահարվեց այն ծանր տպավորությունը, թե ինչու՞ պետք է նման բարոյազուրկ անձինք ղեկավարներ կարգվեն և քմահաճորեն տնօրինեն մարդկանց կյանքն ու աշխատանքը: Ա. Մանդալյանն ու նրա նմանները, ինչ խոսք, աշխատանքային կոլեկտիվների անդամներ են, նրանց արարքը չէր կարող հայտնի չլինել գործընկերներին, շրջապատին, կուսկազմակերպությանը, որոնք, սակայն, միշտ չէ, որ սկզբունքային վերաբերմունք են ցուցաբերում և ժամանակին կարգի հրավիրում այդպիսի օրինազանցներին:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը բազմիցս նշել է, որ մեր հասարակության վերակառուցումը անհնար է առանց կուսակցության ու նրա բոլոր օղակների աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցման: Նա այդ գործում շեշտեց կուսակցական կոմիտեների և հատկապես քաղկոմ-շրջկոմների առաջին քարտուղարների բացառիկ կարևոր դերը: Նրանք պետք է տոն տան բոլոր աշխատանքներին, դրսևորեն անհրաժեշտ կազմակերպական ունակություններ, բարձր պատասխանատվություն, գործի նկատմամբ քննադատական և ինքնաքննադատական մոտեցում և իսկական կուսակցականություն:

Կյանքը, սակայն, ցույց է տալիս, որ կուսակցական կոմիտեների ոչ բոլոր ղեկավար աշխատողներն են կարողանում բռնել այդ քննությունը: ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովը ստուգեց անհատական բնակարաններ կառուցելու նպատակով հողամասեր հատկացնելու և բնակարանային շինարարության վիճակը Ստեփանավան քաղաքում: Ստուգումները ցույց տվեցին, որ այդ գործում կատարվել են պետական կարգապահության կոպիտ խախտումներ ու չարաշահումներ: 1983 թ. սեպտեմբերին Ստեփանավանի քաղսովետի գործկոմը որոշում է ընդունում քաղաքի հյուսիս-արևելյան մասում հողամասեր հատկացնել անհատական բնակարաններ կառուցելու համար: Տնատեղ է հատկացվում 39 քաղաքացիների, որոնց զգալի մասը մինչ այդ քաղսովետի գործկոմում հերթագրված չի եղել: Հողամասերից օգտվել են նաև այնպիսի մարդիկ, ովքեր բնակարանների կարիք չեն ունեցել, այդ թվում նաև Ստեփանավանի կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար Վ. Բալայանի և քաղսովետի գործկոմի նախագահ Ռ. Օլոյանի բարեկամները, ինչպես նաև շրջանի այլ ղեկավար աշխատողների միակ զավակները: Անհատական բնակարաններ կառուցողների թվում բուն արտադրության մարդիկ քիչ են, մինչդեռ, սահմանված նորմաների կոպիտ խախտումներով սեփական տներ են կա-

ռուցում նաև անաշխատ եկամուտներ ունեցողներ: Գործն այնտեղ է հասնում, որ քաղսովետի գործկոմի թույլտվությամբ Ֆ. Վարդումյանն իր զբաղեցրած չորս սենյականոց պետական բնակարանը փոխանակում է Գյուլագարակ գյուղի բնակիչ Կ. Այվազյանի սեփական բնակարանի հետ, սակայն գործարքն օրինականացնելուց հետո Ֆ. Վարդումյանը տեղափոխվում է մշտական բնակության՝ իր պապի մոտ, իսկ Կ. Այվազյանը, պետական չորս սենյականոց բնակարանի վարձակալ ճանաչվելուց հետո, Գյուլագարակում ունեցած իր սեփական բնակարանը թողնում է եղբոր տրամադրության տակ:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննարկելով ստուգման արդյունքները, աշխատավորների դեպուտատների Ստեփանավանի քաղսովետի գործկոմի նախագահ Ռ. Օլոյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից և ազատեց զբաղեցրած պաշտոնից՝ իր ծառայողական ու կուսակցական պարտքի կատարման գործում անպատասխանատվություն դրսևորելու և պաշտոնեական դիրքը չարաշահելու համար:

Ստեփանավանի քաղսովետի գործկոմի գործունեության վրա հսկողություն չիրականացնելու, անհատական բնակարաններ կառուցելու համար հողամասեր հատկացնելու և սեփական բնակարաններ կառուցելու գործում կատարած սխալները չկանխելու համար կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար Վ. Բալայանին հայտարարվեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում: Նա ազատվեց ՀՍՍՀ ագրոարդյունաբերական կոմիտեի նախագահի տեղակալի պարտականությունից: Հանձնարարվեց Ստեփանավանի կուսշրջկոմին՝ ամրապնդել քաղսովետի գործկոմի ղեկավարությունը բանիմաց և ստուգված կադրերով, նրանց հետ միասին շտկել անհատական բնակարանների կառուցման գործում տեղ գտած սխալները, պատասխանատվության ենթարկել բոլոր նրանց, ովքեր խախտել են պետական կարգապահությունը, չարաշահել պաշտոնեական դիրքը:

Ինչ խոսք, անհատական բնակարանների կառուցման գործը այսպիսի տխուր վախճան չէր ունենա, եթե ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմը ժամանակին պատշաճ ուշադրություն հատկացներ այդ մասին ստացած ահազանգերին և դրանք բարեխղճորեն ստուգեր, մի բան, որը տեղի չի ունեցել:

ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. հունիսյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովն արդարացիորեն նկատեց, որ վերակառուցումը անհրաժեշտ է սկսել սկզբնական կուսկազմակերպություններից, նրանց մարտունակության բարձրացումից, նրանց ինքնուրույնության, ինքնագործունեության զարգացումից: Դա այն գլխավոր օղակն է, որով պետք է ինչպես հարկն է զբաղվել և այդ պետք է կատարեն առաջին հերթին քաղկոմ-շրջկոմները: Մեր շատ սկզբնական կուսկազմակերպությունների ոչ բավարար մարտունակության մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ նրանք կոմունիստների անհատական գործերը քննարկելիս երբեմն նրանց արարքներին պատշաճ կուսակցական գնահատական չեն տալիս, դրսևորում են չհիմնավորված ներողամտություն ու անսկզբունքայնություն: Այսպես, 1986 թ. սկզբնական կուսկազմակերպությունները Ծամշադինի շրջանում տարբեր արարքների համար 37 կոմունիստի ենթարկել են կուսակցական պատասխանատվության: Կուսշրջկոմը, անդրադառնալով այդ հարցերին, 18 կազմակերպությունների որոշումներ ճանաչել է մեղմ ու անսկզբունքային և դրանք փոխել է խստացման իմաստով:

Այդ նույն շրջանի ագրոարդյունաբերական միավորման մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ձեռնարկության լիցքավորող, ՍՄԿԿ անդամ Լ. Առաքելյանը անձնական ավտոմեքենան վարել է հարբած վիճակում, որի համար կուսշրջկոմը նրան հայտարարել էր խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական՝ հաշվառման քարտում: Հետագայում նա տալիս է մոտ չորս հազար ռուբլու բենզինի պակասորդ և դատական պատասխանատվության ենթարկվում: Ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպությունը, քննարկելով Լ. Առաքելյանի վերջին արարքը, դրսևորել է բացահայտ ներողամտություն, նրան թողել է կուսշարքերում և բավարարվել նկատողություն հայտարարելով՝ գրանցելով հաշվառման քարտում: Կուսշրջկոմն ուղղել է այդ սխալը և նրան վտարել կուսշարքերից: Բայց եթե շրջկոմի աշխատողները ժամանակին մտահոգվեին այդ հարցով, պատշաճ օգնություն ցույց տային կուսկազմակերպությանը տվյալ գործի նախապատրաստման ու քննարկման ժամանակ, ապա անսկզբունք որոշումը լույս աշխարհ չէր գա:

ՍՄԿԿ կանոնադրությունը սահմանում է, որ զանցանք կատարած կոմունիստը դրա համար առաջին հերթին պետք է պատասխան տա իր սկզբնական կուսկազմակերպությանը: Դա ունի մեծ դաստիարակչական նշանակություն, նպաստում է



քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, կուսկազմակերպությունների դերի և պատասխանատվության բարձրացմանը: Մինչդեռ առանձին քաղկոմ-շրջկոմներ այսօր էլ շարունակում են ղեկավար աշխատողների պատասխանատվության հարցը քննարկել՝ շրջանցելով սկզբնական կազմակերպություններին: Այդպիսի փաստեր կան Գուգարքի, Մարտունու, Սպիտակի շրջաններում:

Կուսակցությունը բազմիցս նախազգուշացրել է, որ վերակառուցման ու արագացման պրոցեսի վճռական ուժը մասսաների կենդանի ստեղծագործությունն է, նրանց ակտիվության ու նախաձեռնության զարգացումը, իսկ դա մեծապես պայմանավորված է այն բանով, թե ինչպիսի հմտությամբ և նպատակասլացությամբ են աշխատում կուսկազմակերպությունները մասսաների հետ: Շուտ գալ դեմքով դեպի մարդը, աշխատանքի կենտրոնում պահել նրան, շուռ գալ դեպի կենդանի գործը՝ ահա կուսակցական աշխատանքի վերակառուցման իմաստը: Շուռ գալ դեպի սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ամեն կերպ օգնել նրանց մարտունակության ուժեղացմանը, կոմունիստների ակտիվության բարձրացմանը, կոփել ու դաստիարակել, կազմակերպել ու նպատակամղել նրանց մեծ գործերի ու խնդիրների իրականացմանը՝ ահա այս է մեր բոլորի, և առաջին հերթին քաղկոմ-շրջկոմների անելիքը:

Կուսշարքերի անաղարտության պահպանումը մեր կուսակցության ողջ պատմության ընթացքում եղել է նրա բոլոր կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Այժմ, ՍՄԿԿ XXVII համագումարից հետո, երբ առավել բարձրացել է պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ, կուսշարքերի անաղարտության համար պայքարը նոր իմաստ ու խորություն է ձեռք բերել: Համագումարի հաստատած կուսակցության նոր կանոնադրությունը սահմանում է, որ սովետական օրենքները խախտելու համար կուսանդամը կրում է կրկնակի պատասխանատվություն՝ պետության առջև և կուսակցության առջև: Կանոնադրությունը կտրուկ կերպով սահմանում է, որ քրեական կարգով պատժելի զանցանքներ կատարած անձինք վտարվում են կուսաշարքերից: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1985—1986 թվականներին մեր հանրապետությունում ոչ մի դատված կոմունիստ կուսշարքերում չի մնացել: Այդ չի նշանակում, սակայն, որ այդ գործում չեն եղել սխալներ ու վրիպումներ, կուսակցական կանոնադրության այդ պահանջը շրջանցելու փորձեր: Եղել են, սակայն դրանք ժամանակին և վճռականապես կանխվել են: Բայց և այնպես լուրջ մտահոգության տեղիք է տալիս այն հանգամանքը, որ քրեորեն հետապնդելի արարք կատարած անձանց կուսակցական պատասխանատվության հարցը մեծ մասամբ քննարկվում է ուշացումով, նրանց նկատմամբ դատավճիռներ կայացնելուց հետո: Ոմանք փորձում են արդարացնել այդ սխալ գործելակերպը՝ «հիմնավորելով» այն կուսշարքերից: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1985—1986 թվականմինչդեռ այստեղ մենք գործ ունենք բոլորովին այլ երևույթի՝ անսկզբունքայնության, երկչոտության, ավելորդ ներողամտության փաստերի հետ: Կոմունիստը իր սխալների համար պետք է առաջին հերթին պատասխան տա իր կուսակցական ընկերների, իր կուսկազմակերպության առաջ, ապա՝ նոր միայն մյուս մարմինների:

Կուսշարքերի անաղարտության պահպանման հարցը, ինչ խոսք, շատ ավելի լայն է և այն չի կարելի հանգեցնել միայն կոմունիստի կատարած քրեորեն պատժելի արարքին: Կոմունիստի պատասխանատվության հարցը պետք է առաջ քաշել բոլոր այն դեպքերում, երբ նա խախտել է կուսակցության ծրագրի ու կանոնադրության պահանջները, կուսակցական բարոյականության նորմերը, երբ նա ոտնահարել է կուսակցական ու պետական կարգապահությունը, իր սխալ վարքագծով արատավորել կուսանդամի պատիվն ու անունը: Այդ պատասխանատվությունը, ըստ գործի հանգամանքների և կատարած արարքի հետևանքների, կարող է նաև հանգեցնել կուսշարքերից վտարելուն: Այստեղ է, ահա, որ լիբերալիզմն ու թողտվությունը դեռևս զգացնել են տալիս:

Կուսակցությունն այսօր անհաշտ պայքարի է կոչում պարազիտիզմի, անաշխատ եկամուտների կորզման, հանրային ունեցվածքի հափշտակման, հավելագրումների, հարբեցողության և մեր կյանքի մյուս բացասական երևույթների դեմ, մինչդեռ այդ պայքարը կազմակերպողներից ոմանք դեռևս չեն հասկանում հարցի ողջ լրջությունը, շարունակում են գերի մնալ հին պատկերացումներին ու մտածելակերպին: Ինչպե՞ս հասկանալ, օրինակ, որ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության համակարգի մի շարք ձեռնարկություններում սոցիալիստական սեփականության հափշտակումները ոչ միայն չեն նվազում, այլև ավելանում են: Ընդ որում հայտ-

նաբերվել են առանձնապես խոշոր չափերի հասնող անօրինականության, ցածրորակ արտադրանքի թողարկման, պետական ունեցվածքի վատնում-յուրացումների, հափշտակության փաստեր, մինչդեռ ձեռնարկությունների որոշ կոմունիստ-ղեկավարներ, փոխանակ կուսակցական տոմսով պատասխան տալու այդ ամենի համար, իրենց գլուխն ազատում են զանազան տույժերով: Հարկավոր է ստեղծել այնպիսի մթնոլորտ, որ նման գերճարպիկ մարդիկ չկարողանան իրենց կապերի ու հովանավորողների զորությամբ նորից ասպարեզ գալ ու նորից ձգտել վերահաստատելու իրենց հին բարքերն ու սովորույթները: Կուսակցական կոմիտեները պետք է առաջին հերթին մտահոգված լինեն կուսակցության պատիվը բարձր պահելով և ոչ թե ձախողված ու արատավորված կոմունիստին «փրկելով»: Խստացնելով պահանջկոտությունը՝ կուսկազմակերպությունը չպետք է մոռացության տա կոմունիստների դաստիարակության և նրանց վրա ներազդելու նախազգուշական միջոցառումները, որոնք նախատեսված են ՍՄԿԿ կանոնադրությամբ: Այստեղ սահմանված է, որ աննշան զանցանքների համար պետք է կիրառվեն կուսակցական դաստիարակության և ներգործության այնպիսի միջոցներ, ինչպիսիք են ընկերական քննադատությունը, կուսակցական հանդիմանությունը, նախազգուշացումը կամ մատնացույց անելը: Ավելորդ խստությունն այս պարագայում անզորության, դաժանության, անկարողության նշան է, հետևաբար՝ անընդունելի: Տույժի դաստիարակչական նշանակությունը ոչ թե նրա խստության մեջ է, այլ ճշմարտացիության, անխուսափելիության, հոգեբանական ներգործության ուժի մեջ: Տույժը պետք է հասկացվի ու գիտակցվի մարդկանց ու շրջապատի կողմից, այլապես այն կդիտվի որպես վրիժառություն: Այն պետք է արթնացնի մարդու խիղճը, սթափեցնի նրան, կոփի կամքը:

Թերությունների հետ «խաղաղ գոյակցելը», դրանք չտեսնելն ու սքողելը կատարյալ չարիք են ոչ միայն կուսանդամի, այլև յուրաքանչյուր ազնիվ մարդու համար: Ցավոք, սկզբունքային, անզիջում, համառ ու հետևողական պայքարը թերությունների ու մեր կյանքի բացասական երևույթների դեմ դեռևս չի ծավալվում համընդհանուր ճակատով: Վերջերս ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովն ուսումնասիրեց, թե ինչպես են պայքարում ձկնագողության դեմ Սևանի ավազանի շրջանների տնտեսական, սովետական ու կուսակցական կազմակերպություններն ու իրավապահպան մարմինները: Պարզվեց, որ այդ պայքարը ծայրաստիճան անբավարար է, որ հաճախ այն կազմակերպությունների աշխատողները, որոնք կոչված են պահպանելու և հարստացնելու ձկան պաշարները, հենց իրենք են կատարում տարբեր բնույթի չարաշահումներ ու ոտնձգություններ, և, որպես կանոն, մնում անպատիժ: Այդ աշխատողներից ոմանք նույնիսկ նախկինում դատված են եղել ձկնագողության համար: Ձկան պաշարների նկատմամբ վերահսկողություն իրականացնող «Հայձկնբուծ» կազմակերպության Կամոյի տեղամասում աշխատող 13 տեսուչներից երեքը անցյալում դատված են եղել: Նրանք բոլորն էլ աշխատանքի են ընդունվել Կամոյի կուսշրջկոմի կամ շրջսովետի գործկոմի երաշխավորությամբ: Սևանի ազգային պարկի Մարտունու տեղամասի 18 աշխատողներից 4-ը ևս նախկինում դատվել են խուլիգանության և ձկնագողության համար:

Ուսումնասիրությունները ցույց տվեցին նաև, որ Սևանի ավազանի շրջանային սովետների գործկոմները և կուսշրջկոմները փաստորեն վերահսկողություն չեն իրականացնում Սևանի ազգային պարկի, «Հայձկնբուծ» կազմակերպության, նրանց տեղամասերի, ձկնկոմբինատների գործունեության նկատմամբ, չեն քննարկում նրանց հաշվետվությունները, գրեթե չեն անդրադառնում ձկնագողության դեմ պայքարի հարցերին: Ձկնագողության դեմ միանգամայն անբավարար է նաև հիշյալ շրջանների իրավապահպան մարմինների պայքարը:

Ստուգման արդյունքները քննարկվեցին ՀԿԿ Սևանի, Կամոյի անվան, Մարտունու, Վարդենիսի և Կրասնոսելսկի կուսշրջկոմների առաջին քարտուղարների, շրջանային և քաղաքային սովետների գործկոմների նախագահների, շրջանների իրավապահպան մարմինների, Սևանի ազգային պարկի և մյուս տնտեսական կազմակերպությունների ղեկավարների խորհրդակցությունում: Խստորեն քննադատվեցին բոլոր այն կազմակերպությունների ղեկավարները, ովքեր ոչ լուրջ վերաբերմունք են ցուցաբերել այդ ծայրաստիճան կարևոր խնդրին: Խորհրդակցությունը համապատասխան հանձնարարականներ տվեց կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպություններին նշված թերությունները անհապաղ վերացնելու և կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու համար:

Կոմունիստի բնորոշ հատկանիշներից է սեփական գործունեության նկատմամբ



քննադատական վերաբերմունքը: Նրա սկզբունքայնության ու քաղաքական հասունության վկայությունը ոչ միայն ուրիշների, այլև իր իսկ սխալներն ու բացթողումները վերհանելու և շտկելու կարողությունն է: «Քննադատության նկատմամբ վերաբերմունքը,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում,— վերակառուցման, հասարակության մեջ կատարվող ամբողջ նորի նկատմամբ մարդու վերաբերմունքի կարևոր չափանիշն է»:

Սխալն, ինչ խոսք, ոչ ոքի պատիվ չի բերում, սակայն չի սխալվում նա, ով ոչինչ չի անում: Սխալը դեռևս չարիք չէ, չարիքը սխալներից պատշաճ հետևություն անելու անկարողությունն է: Իսկական կոմունիստը սեփական սխալները ոչ միայն չի սքողում, այլև դրանք վեր է հանում, դատապարտում շատ ավելի անողոք, քան մեկ ուրիշը: Այդ հատկանիշով օժտված են սովորաբար ամուր կամքի և բնավորության տեր, քաղաքականապես կոփված, շիտակ և ազնիվ մարդիկ: Այդպիսի կոմունիստի նկատմամբ ակամա համակվում ես հարգանքով՝ համոզված լինելով, որ նա իր սխալներից պատշաճ դասեր կքաղի: Սակայն, ցավոք, մենք ավելի հաճախ ենք գործ ունենում մարդկանց հետ, ովքեր դարձել են իրենց սեփական ես-ի գերին, ում համար խորթ են խիղճն ու ազնվությունը, ինքնաքննադատության զգացումը:

Ոմանք մարդկանց արժանիքները գնահատում են սեփական շահերի տեսանկյունից. անտեսեցիր՝ վայ քեզ: Այսպես, կոմունիստ Ն. Ղոնախչյանին կուսակցական պատասխանատվության էին ենթարկել խմած վիճակում մեքենա նստելու և ղեկն իր անչափահաս որդուն վստահելու համար: Դրանից դասեր չքաղեց, կատարեց մեկ այլ անվայել արարք: Լինելով Աշտարակի շրջանային ռադիոհաղորդումների կազմակերպիչը՝ նա հաղորդում է պատրաստում Կարբիի միջնակարգ դպրոցի արտադասարանային աշխարհագրական խմբակի մասին՝ նրա անդամների ձայներով: Մի քանի ամիս անց նա այդ նույն հաղորդումը կրկնում է արդեն ուրիշ՝ Աշտարակի չորրորդ դպրոցի երեխաների ձայներով: Պարզվել է, որ նման աղավաղումներ Ն. Ղոնախչյանն առաջին անգամ չէ, որ կատարում է: Վերջին տարիներին նա միաժամանակ ոչ լուրջ վերաբերմունք է ցուցաբերել կուսակցական անդամավճարների մուծման նկատմամբ: 1986 թ. հուլիսին քննարկելով Ն. Ղոնախչյանի պատասխանատվության հարցը՝ Աշտարակի կուսշրջկոմը նրան երկրորդ անգամ է պատժում, սակայն այս անգամ ևս նա իր սխալներից դասեր չքաղեց, փոխարենը չարությամբ լցվեց նրանց դեմ, ովքեր փորձել էին կարգի հրավիրել նրան:

ՀԿԿ Կենտկոմը, քննարկելով Ն. Ղոնախչյանի բողոքարկումը Աշտարակի կուսշրջկոմի որոշման դեմ, մերժեց այն: Շրջկոմի առանձին աշխատողների դեմ նրա մեղադրանքները ստուգումներով չհիմնավորվեցին:

Կոմունիստի անբասիր կերպարին խորթ են թե՛ ստորագրված, թե՛ անստորագիր զրպարտանքները, չհիմնավորված մեղադրանքները, նեղ, անձնական հաշիվներ մաքրելու միտումները, բանսարկությունները: Կուսկազմակերպությունները պետք է կարողանան զանազանել, թե ովքեր են հանդես գալիս առողջ, սկզբունքային քննադատությամբ և ովքեր են զբաղվում քննադատամոլությամբ ու դեմագոգիայով: Ամեն կերպ աջակցելով քննադատության ծավալմանը՝ միաժամանակ պետք է մերկացնել զրպարտիչներին ու քննադատամոլներին, պատժել նրանց կուսակցական կանոնադրության ողջ խստությամբ: Խոստովանենք, որ այդ պայքարը դեռևս խիստ թույլ է, երկչոտ, անհետևողական: Դա էլ հենց ոգևորում է զրպարտիչներին ու բանսարկուներին:

Եղեգնաձորի շրջանի Շատին գյուղի բնակիչ, կուսանդամ Ե. Մարտիրոսյանը մինչև վերջերս դիմումներ ու գանգատներ էր հղում հանրապետական ու շրջանային ղեկավար մարմիններին, կեղծ, աղավաղված, երբեմն շինծու «փաստերի» հիման վրա հորինված մեղադրանքներ էր առաջադրում շրջանի առանձին ղեկավար աշխատողների հասցեին, հատկապես նրանց, ովքեր չէին ընդառաջել նրա անօրինական պահանջներին կամ վերհանել էին նրա և յուրայինների սխալները: Այդ դիմումները շատ անգամ էին ստուգվել, դրանց զրպարտչական բնույթը շատ անգամ էր բացահայտվել, սակայն ոչ ոք Ե. Մարտիրոսյանից հաշիվ չէր պահանջել: Հերթական ստուգումներից մեկ անգամ ևս պարզվեց դիմումների զրպարտչական բնույթը: Ավելին, Ե. Մարտիրոսյանը, որպես կոմունիստ և քաղաքացի, դրսևորել է անազնվություն, կեղծել իր կենսագրական տվյալները, արհեստականորեն փոքրացրել տարիքը, որի միջոցով Հայրենական մեծ պատերազմի առաջին տարիներին խուսափել է սովետական բանակ զորակոչվելուց, իսկ կենսաթոշակի անցնելու ժամանակ վերականգնել է իր իսկական տարիքը: Ստուգման արդյունքներն ուղարկվեցին կուսակ-

## Սովետներ. նախաձեռնություն և գործարարություն

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊԻ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԸ

**ՍԵԴԱ ԲԱՐՍԵՂՅԱՆ**
**Ժողովրդական դեպուտատների Սպանդարյանի շրջսովետի գործկոմի քարտուղար**

**ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՌՋԵՎ** այսօր խնդիր է դրվում՝ դառնալ լիիրավ և պատասխանատու տեր այն ամենում, ինչը վերաբերում է մարդկանց ամենօրյա պահանջմունքների ու կարիքների բավարարմանը, հատկացվող միջոցների, տեղական հնարավորությունների և ռեզերվների օգտագործմանը, բնակչության սպասարկման բնագավառում բոլոր կազմակերպությունների աշխատանքի կոորդինացմանը և վերահսկողությանը: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը սոցիալական ոլորտի գերադաս զարգացումը, սովետական մարդկանց աշխատանքի, կենցաղի, հանգստի, կրթության և բուժսպասարկման լավ պայմանների պահանջմունքի ավելի ու ավելի լրիվ բավարարումը համարեց վերակառուցման գլխավոր խնդիրներից մեկը: Պլենումը կուսակցական, սովետական ու տնտեսական մարմիններից պահանջեց ցուցաբերել մարդկանց հուզող ընթացիկ հարցերի լուծման հետ հասարակության կյանքի մասշտաբային արմատական պրոբլեմների լուծումը զուգորդելու ընդունակություն: Հասկանալի է, որ ժողովրդական դեպուտատների մեր շրջանային սովետի գործկոմում ստացվող նամակներն ու դիմումները նույնպես հիմնականում վերաբերում են այդ խնդիրներին, դառնում աշխատավորների հետ կապի ամրապնդման կարևոր միջոց:

Շրջսովետի գործկոմը, նրա բաժինները և վարչությունները հետևողականորեն զբաղվում են բնակչության նամակների ու դիմումների հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու, նրանց բողոքներին և առաջարկություններին գործնական ընթացք տալու հարցերով: Նրանք ջանում են, որպեսզի ոչ մի նամակ ու դիմում, ոչ մի բողոք ու առաջարկություն, որոնք շոշափում են ինչպես հասարակական նշանակության, այնպես էլ քաղաքացիների անձնական բարեկեցության խնդիրներ, չմնան անհետևանք, ընթացք ստանան սահմանված ժամկետներում: Այլ խոսքով, մասսաների հետ ունեցած կապի անմիջական և կարևոր դըրսևորումներ համարելով աշխատավորների նամակները և նրանց ընդունելության կազմակերպումը՝ շրջսովետի գործկոմը ձգտում է ավելի ամրապնդել և գործնական դարձնել այդ կապը, արդյունավետ օգտագործել եղած հնարավորությունները: Այդ նպատակով մենք մշակել և իրականացնում ենք կոմպլեքսային միջոցառումներ՝ ուղղված բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային սպասարկման հետագա բարելավմանը, առաջնային և կենսական նշանակության այլ հարցերի լուծմանը: Քաղաքացիներից, աշխատավորական կոլեկտիվներից ստացված այն առաջարկությունները, որոնք արծարծում են հասարակական կարևորության պրոբլեմներ, հաշվի են առնվում շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման ամենամյա պլաններն մշակելիս:

Քաղաքացիների նամակների հետ տարվող աշխատանքում շատ կարևոր են կատարողական կարգապահության ամրապնդումը, յուրաքանչյուր պաշտոնյայի անձնական պատասխանատվության բարձրացումը: Այդ նպատակով եռամսյակը մեկ անգամ, վերլուծում ենք գործկոմի բաժինների և վարչությունների գործունեության արդյունքները և անհրաժեշտության դեպքում հարցը քննարկում գործկոմի նիստում: Նման հաշվետվություններով հանդես են եկել, օրինակ, բնակարանային տնտեսության արտադրական վարչության, բնակֆոնդերի հաշվառման և բաշխման, սոցիալական ապահովության բաժինների, ԲՇՏ-ների, ինչպես նաև ենթակա մի շարք այլ ծառայությունների ղեկավարներ: Արդյունավետ էր շրջսովետի գործկոմի բաժիններում, վարչություններում ու հիմնարկ-ձեռնարկություններում աշխատավորների նամակներին ընթացք տալու և նրանց ընդունելության կազմակերպման հարցի քննարկումը շրջսովետի նստաշրջանում: Ընդունված որոշման կատարման ընթացքի մասին հաղորդում տրվեց շրջսովետի հաջորդ նստաշրջաններից մեկում: Դատելով արդյունքներից՝ ինչպես հարցի քննարկումը, այնպես էլ ընդունված որոշման կատարման ստուգումը ծառայել են իրենց նպատակին:

Կամ մեկ ուրիշ օրինակ: Անցած տարվա նոյեմբերի կեսերին շրջսովետի գործկոմի նիստում գործարար մթնոլորտում քննարկվեց բնակկոմտնտեսության արտադրական վարչությունում բնակարանների նորոգման վերաբերյալ 1985—1986 թթ. ստացված դիմումներին ընթացք տալու հարցը: Արձանագրվեց, որ երկու տարում վարչությունում ստացված այդ կարգի 460 դիմումներից 413-ին դրական ընթացք է տրվել: Գործկոմի նիստը միաժամանակ լուրջ թերություններ բացահայտեց վարչության աշխատանքում: Մասնավորապես նշվեց, որ առանձին աշխատանքներ ձգձգվել են կամ կատարվել ցածր որակով: Ընդունված որոշմամբ վարչության առջև խնդիր դըրվեց՝ եռամսյակը մեկ անգամ ապարատի ընդլայնված խորհրդակցությունում քննարկել դիմում-բողոքներին ընթացք տալու հարցը, պատասխանատվության ենթարկել դրանց ձգձգման համար մեղավորներին:

Նամակների հետ տարվող աշխատանքի կատարողական կարգապահության ամրապնդմանը էապես նպաստում է գործկոմում ստացված դիմում-գանգատներին ընթացք տալու նկատմամբ քաղաքի կառավարման ավտոմատացված համակարգերի Երևանի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտի կողմից հսկողության սահմանումը: Աշխատանքի կազմակերպման այդ եղանակի պայմաններում շրջսովետի գործկոմում ստացված յուրաքանչյուր դիմումի ընթացք տալու նկատմամբ իրականացվում է ավտոմատ մեքենայական հսկողություն:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով սահմանվել են նամակների քննարկման ժամկետներ: Նախատեսված ժամկետում նամակին ընթացք չտալու և դիմողին չպատասխանելու դեպքում այն հսկողությունից չի հանվում և դրան համապատասխան իջնում է տվյալ վարչության կամ բաժնի կատարողական կարգապահության գործակիցը: Նամակների քննարկման գործում ավտոմատացված համակարգի ներդրումը հնարավորություն է տալիս ըստ բաժինների և վարչությունների, ինչպես նաև ըստ նամակներում բարձրացված հարցերի բովանդակության՝ վերլուծել գործերի իրավիճակը շրջսովետի գործկոմում և համապատասխան միջոցառումներ իրականացնել տեղ գտած թերությունները վերացնելու, ենթակա ծառայությունների աշխատանքի օպերատիվությունն ապահովելու համար:

Քաղաքացիների ընդունելության կազմակերպումը շրջսովետի գործկոմի ամենօրյա ուշադրության կենտրոնում է: Անձնական հարցերով ընդունելությունը աշխատավորների ազատ ժամանակին առավել հարմար դարձնելու նպատակով գործկոմի ղեկավարությունը նրանց ընդունում է նաև շաբաթ օրերին և աշխատանքից դուրս ժամերին: Հաստատված գրաֆիկին համապատասխան, ամսվա յուրաքանչյուր շաբաթ օր որոշակի ժամերի ընդունելություն է նշանակվում գործկոմի նախագահի կամ տեղակալներից որևէ մեկի մոտ: 1985 թ., օրինակ, գործկոմի ղեկավարությունը, բաժինների վարիչները և վարչությունների պետերը կատարել են այդպիսի 338 ընդունելություն, որին մասնակցել է 1524 քաղաքացի, իսկ 1986 թ. համապատասխանաբար՝ 376 ընդունելություն և 1.310 քաղաքացի: Ընդ որում աշխատավորների բարձրացված հարցերին տրվել են համապատասխան լուծում կամ բացատրություն:

Կենսագործելով կուսակցության և կառավարության որոշումները՝ գործադիր կոմիտեն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների, հաշմանդամների, զոհված զինծառայողների ընտանիքների, աշխատանքի վետերանների նամակներին ընթացք տալուն և նրանց ընդունելության կազմակերպմանը: Ինչպես գործկոմում, այնպես էլ վարչություններում ու բաժիններում նրանց դիմումները գրանցվում են հատուկ մատյաններում և կատարման ընթացքի վրա սահմանվում է ամենօրյա հսկողություն:

խմբի նախագահ Ջուլիետա Հովումյանին՝ օգնել կարգավորելու իրենց շենքի տաք ջրի անխափան մատակարարումը: Այդ մասին Ջ. Հովումյանը ժամանակին տեղեկացրել է շրջսովետի գործկոմի բնակարանային տնտեսության արտադրական վարչությանը: Վերջինս հարցն ուսումնասիրել և լուծել է:

Մեկ ուրիշ օրինակ. № 10 ԲՇՏ-ի տերիտորիալ դեպուտատական խմբի ղեկավար Վերոնիկա Աստոյանին էին դիմել նրա ընտրական օկրուգի ընտրողները՝ Լենինի պողոտայի № 37 բնակելի շենքի մերձակայքում մանկական ակումբ կառուցելու համար օգնություն ցույց տալու խնդրանքով: Վ. Աստոյանն այդ հարցն առաջ քաշեց շրջսովետի գործկոմի առջև: Այն այժմ ուսումնասիրվում է քաղսովետի գործկոմում:

Դեպուտատների միջամտության նման օրինակները բազմաթիվ են: Աշխատավորների դիմում-.բողոքներին ընթացք տալուն մեծապես օգնում են նաև դեպուտատներ Ա. Մկրտչյանը, Ռ. Վաթյանը, Ս. Մկրտչյանը, տերիտորիալ դեպուտատական խմբի նախագահ Վ. Կիրակոսյանը և ուրիշներ:

Շրջանի աշխատավորության հետ կապի հետագա ամրապնդման, նրանց հուզող հարցերը տեղում լուծելու նպատակով շրջսովետի գործկոմի ղեկավարությունը ընդունելություններ է կազմակերպում նաև հիմնարկ-ձեռնարկություններում: Վերջին երկու տարում, օրինակ, կազմակերպվել է այդպիսի ընդունելություն 36 կազմակերպություններում: Դրանց մասնակցել են հարյուրավոր բանվոր-ծառայողներ: Նրանք առաջ են քաշել բազմաթիվ հարցեր, որոնց համապատասխան ընթացք է տրվել: Այսպես, օրինակ, Չարենցի անվան դպրոցում տեղի ունեցած ընդունելության ժամանակ մանկավարժական կոլեկտիվը խնդրեց շրջսովետի գործկոմին՝ վերջնականապես լուծել դպրոցի հիմնական մասնաշենքի վերակառուցման հարցը, որը տարիներ շարունակ արծարծվում, սակայն չէր լուծվում: Ներկայումս մասնաշենքը վերակառուցվում է և նոր ուսումնական տարում լրիվ պատրաստ կլինի: Այդպիսի ընդունելություն է կազմակերպվել ՀԿԿ Կենտկոմի հրատարակչությունում, № 1 տպարանում, Թումանյանի անվան տիկնիկային թատրոնում, Չարենցի, Մայակովսկու անվան դպրոցներում, բոլոր ԲՇՏ-ներում և այլուր:

Շրջանի բնակիչների դիմում-բողոքների հետ տարվող աշխատանքում մշտապես զգում ենք ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի օգնությունն ու ղեկավարությունը: Կուսակցական ամենօրյա հսկողության շնորհիվ հնարավոր է լինում ավելի հստակորեն կազմակերպել ու աստիճանաբար բարելավել այդ գործը: Հենց վերջերս՝ մարտ ամսին, կուսշրջկոմի բյուրոն գործարար մթնոլորտում քննարկեց այդ ասպարեզում շրջսովետի գործկոմում կատարվող աշխատանքի վիճակը: Շրջկոմի բյուրոյի որոշումը կօգնի մեզ՝ վերացնելու բացահայտված թերությունները, բավարարելու աշխատավորների պահանջները, լուծելու սոցիալական զարգացման հրատապ շատ հարցեր:

Ելնելով ունենալով ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի 1985 թ. ապրիլյան և 1987 թ. հունվարյան պլենումների որոշումները և պահանջները՝ շրջսովետի գործկոմը ջանում է է՛լ ավելի ամրապնդել կապը աշխատավորների հետ, հոգատարությամբ լուծել նրանց նամակներում առաջ քաշված հարցերը: Այո՛, վերակառուցումը հարկավոր է իրականացնել ամենուրեք, նաև աշխատավորների նամակների, դիմում-բողոքների հետ տարվող աշխատանքում:

---



# «ՆԵՈԳԼՈԲԱԼԻԶՄԻ» ԴՈԿՏՐԻՆԱՅԻ ԱԳՐԵՍԻՎ ԷՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

**ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ** արդի փուլում շեշտակիորեն ուժգնացել է իմպերիալիստական հետադիմության
ագրեսիվությունը: Այն հատկապես ծայրահեղորեն, խոտելի կերպով է դրսևորվում
Ռ. Ռեյգանի վարչակարգի արտաքին քաղաքական կուրսում, որը նպատակ է հե-
տապնդում մեծացնել միջազգային լարվածությունը, ընդլայնել ռազմաքաղաքական
արկածախնդրությունը և արագացնել սպառազինությունների մրցավազքը: ԱՄՆ-ի
ագրեսիվ ստրատեգիան ուղղված է այն բանին, որպեսզի թույլ չտա սոցիալական
առաջադիմության և խաղաղության ուժերի հետագա ամրապնդում, ազգային-ազա-
տագրական պայքարի աճ ու խորացում, ամրապնդի ժողովուրդների նեոգաղութա-
յին շահագործման համակարգը, համաշխարհային ասպարեզում հասնի ուժերի գո-
յություն ունեցող հավասարակշռության այնպիսի էական փոփոխության, որը հնա-
րավորություն ընձեռեր ԱՄՆ-ին իր կամքը պարտադրելու ողջ մարդկությանը:

ՍՄԿԿ XXVII համագումարին ներկայացված Քաղաքական զեկուցման մեջ
Մ. Ս. Գորբաչովն այս առթիվ նշեց. «ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիայի աչ-
քերն այսօր էլ միջազգային լարվածության սրումը դիտում է որպես ռազմական հատ-
կացումների, գլոբալ հավակնությունների, ուրիշ երկրների գործերին միջամտելու, ա-
մերիկացի աշխատավորների շահերի և իրավունքների վրա կատարվող հարձակման
արդարացում: Դատելով ըստ ամենայնի, քիչ դեր չի խաղում նաև լարվածությունը
դաշնակիցների վրա ճնշում գործադրելու համար օգտագործելու նկատառումը, որ-
պեսզի նրանց դարձնեն առավելագույնս հնազանդ, ենթարկեն Վաշինգտոնի թելա-
դրանքին» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** «Հայաստան» հրատ. 1986, էջ 16):

«Նեոգլոբալիզմի» դոկտրինան՝ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության և պրո-
պագանդիստական մեքենայի այդ նորագույն հայտնագործությունը, ԱՄՆ-ի արտա-
քին քաղաքականության վերը նշված ագրեսիվության մարմնավորումն ու խտացված
արտահայտությունն է: Միևնույն ժամանակ, տվյալ դոկտրինան, ինչպես նաև ԱՄՆ-ի
արտաքին քաղաքականության զինանոցի նախկին դոկտրինաները, կատարում է
նաև կարևոր գաղափարախոսական ֆունկցիաներ. այն ձգնում է այնպիսի տպավո-
րություն ստեղծել, թե խոսքը «սովետական ռազմական սպառնալիքից», «միջազ-
գային տեռորիզմից» և այլնից «ազատ աշխարհի», այսինքն՝ կապիտալիստական սիս-
տեմի պաշտպանության մասին է: Վաշինգտոնում լավ են յուրացրել տխրահռչակ
Ջ. Ֆ. Դալլեսի պատգամը. «Որպեսզի երկրին ստիպես կրելու այն բեռը, որի հետ
կապված է հզոր զինված ուժեր պահելը, անհրաժեշտ է պատերազմական ժամա-
նակվա հոգեվիճակին համանման հուզական մթնոլորտ ստեղծել: Պետք է դրսից
սպառնալիքի պատկերացում ստեղծել»: Հակասովետական, հակակոմունիստական

աղմուկի ներքո «նեոգլոբալիզմի» դոկտրինան արդեն գործում է՝ ԱՄՆ-ի ագրեսիվ քայլերն ուղղելով ընդդեմ սոցիալական ու ազգային ազատագրության ուժերի, Լիբիայի, Աֆղանստանի, Նիկարագուայի, Սիրիայի և այլ երկրների դեմ։ Այն հանդես է գալիս իբրև համաշխարհային մասշտաբով սոցիալական ռևանշի իմպերիալիստական զենք։

Ի՞նչ է «նեոգլոբալիզմի» դոկտրինան։ Որո՞նք են նրա բովանդակությունը, առանձնահատկությունները, տեսական փիլիսոփայական հիմքը։ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության նոր դոկտրինայի մասին սկսեցին խոսել 1984 թ. վերջին՝ պրեզիդենտական ընտրություններում հանրապետական կուսակցության կրկին հաղթանակից անմիջապես հետո։ Այն անվանում են նաև «Ռեյգանի դոկտրինա», երբեմն էլ՝ «Ռեյգան-Շուլցի դոկտրինա», վերջին ժամանակներս այն ավելի հաճախ անվանվում է «նեոգլոբալիզմի» դոկտրինա։ Նրա հիմնական բովանդակությունը համառոտակի, երկու-երեք նախադասությամբ ձևակերպված է 1985 թ. փետրվարին պրեզիդենտ Ռ. Ռեյգանի՝ կոնգրեսին հղած «Երկրի դրության մասին» ընդարձակ ուղերձում։ Նա հայտարարեց, որ ԱՄՆ-ը բացեիբաց կպաշտպանի հետադիմական ուժերին ու խռովարարներին «ցանկացած մայրցամաքում Աֆղանստանից մինչև Նիկարագուա», միայն թե նրանք հանդես գան ընդդեմ չմիացած զարգացող երկրներում ՍՍՀՄ-ին բարեկամ կառավարությունների դեմ («The Washington Post», February 7, 1985)։ Ամերիկյան հրապարակախոս Ջ. Ռեստոնը դրա բովանդակությունը ձևակերպել է այսպես. «ԱՄՆ-ը օգնություն ցույց կտա ցանկացած պետությանն ու ցանկացած խմբակցությանը, որոնք երկրագնդի ցանկացած կետում պայքարում են հանուն ազատության, ընդդեմ կոմունիստական տիրապետության» («The New York Times», March 27, 1985)։ Այդպիսով, կառավարության մակարդակով հայտարարվեց, որ ԱՄՆ-ը բացահայտորեն և ոչ թե միայն ԿՀՎ-ի գաղտնի ուղիներով, կպաշտպանի, կքաջալերի, կֆինանսավորի հակահեղափոխությունն ամբողջ աշխարհում։ Դա միաժամանակ ենթադրում է «դաժան հակամարտություն ՍՍՀՄ-ի հետ»։ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Կ. Ուայնբերգերը բազմիցս հայտարարել է գլոբալ և ռեգիոնալ մակարդակներում ՍՍՀՄ-ի հետ առճակատման անհրաժեշտության մասին։

Նման ընկալմամբ «նեոգլոբալիզմի» դոկտրինան օրինաչափորեն կապված է ԱՄՆ-ի արտաքին քաղաքական գծի նախորդ փուլի հետ, սերում է «սառը պատերազմի» հիմնադրույթներից և խարսխվում որոշակի իմպերիալիստական տեսական հիմքի վրա։ Այդ տեսության ստեղծողը կամ առնվազն նրա խոշոր ներկայացուցիչներից մեկը Ջ. Ֆ. Դալլեսն էր, որը, 50-ական թվականներին լինելով ԱՄՆ-ի պետական քարտուղարը, առաջադրեց ՍՍՀՄ-ի հետ գլոբալ առճակատման տեսությունը։ Նա այն կարծիքին էր, թե երկու սիստեմների հակամարտության պայմաններում անկախության հասած ցանկացած երկիր դուրս է գալիս ամերիկյան վերահսկողությունից, այդպիսով առաջացնելով «վակուում», որը պետք է անպայմանորեն լրացվի Միացյալ Նահանգների կողմից։ Այդ հակակոմունիստական տեսությունը զարգացվեց նաև հետագա՝ 60—70-ական թվականներին, ձեռք բերելով իր կոնկրետ պատմական դրսևորումներն ու գծերը։ Ահա թե ինչու «նեոգլոբալիզմի» դոկտրինան ոչ միայն 50—70-ական թվականների իմպերիալիզմի արտաքին քաղաքականության գծի օրինաչափ շարունակությունն է, այլև այն գործնականում օրգանապես ներառել է ԱՄՆ-ի արտաքին քաղաքական դոկտրինաների՝ սկսած 1947 թ. «Տրումենի դոկտրինայից» մինչև 1957 թ. «Էյզենհաուերի դոկտրինան», 1965 թ. «Ջոնսոնի դոկտրինան», Նիքսոնի 1969 թ. «Գուամի դոկտրինան» ու 1979 թ. «Քարտերի դոկտրինան» («ԱՄՆ-ի կենսական շահերի պաշտպանությունը»), գաղափարները, դրույթներն ու նպատակները։

Մյուս ագրեսիվ դոկտրինաների հետ «նեոգլոբալիզմի» ծագումնաբանական ընդհանրությունը, ազգակցությունը բացահայտորեն երևում է նրանց համեմատական դիտարկումից։ Վերցնենք, օրինակ, 50-ական թվականների ամերիկյան իմպերիալիզմի այնպիսի ագրեսիվ դոկտրինան, ինչպիսին Ջ. Ֆ. Դալլեսի առաջադրած «կոմունիզմի հետ շպրտման» դոկտրինան է։ Այն ընկած էր ԱՄՆ-ի գործողությունների հիմքում՝ 1953 թ. Բեռլինում և 1956 թ. Հունգարիայում հակահեղափոխական ելույթներ կազմակերպելիս։ Ղեկավարվելով այդ դոկտրինայով՝ ԱՄՆ-ը ստեղծեց «կոմունիզմի



դեմ մարտնչողներին», այսինքն՝ ծայրահեղ աջ հակահեղափոխական ուժերին երկրների ներսում և հետադիմական վտարանդիությանը (ներառյալ՝ ֆաշիստական դրածոներին ու դահիճներին) ցույց տրվող քաղաքական, ֆինանսական, պրոպագանդիստական և այլ աջակցության լայն ցանց։ Ինչպես այժմ, այն ժամանակ ևս հիմնվեցին «միջազգային» կազմակերպություններ, ինչպիսին «ստրկացված ժողովուրդների ասամբլեան» է, որոնց ֆինանսավորում էին ԿՀՎ-ն և ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը։ Ստեղծվում էին «վտարանդի կառավարություններ», զինված հակահեղափոխական ջոկատներ, որոնք սիստեմատիկաբար խախտում են սոցիալիստական և առաջադիմական գիծ վարող ազատագրված երկրների սուվերենությունը։

Խոսելով հաջորդայնության մասին, անհրաժեշտ է առանձնակի նշել «նեոգլոբալիզմի» դոկտրինայի օրգանական կապը համաշխարհային տիրապետության հավակնող ԱՄՆ-ի կայսերական գաղափարախոսության հետ։ Ամերիկայի ամբողջ պատմությունը, սկսած նրա ամենավաղ փուլերից, ներծծված է շովինիզմի, «ամերիկյան բացառիկության» ոգով։ «Աստծո ընտրյալները» լինելու, ուռա-հայրենասիրության մեսիանիզմը, ամեն մի ամերիկացու չափազանց, ոչ քննադատաբար գովերգումը, մեծամտությունը, ամբողջ աշխարհը ղեկավարելու իրավունքին հավակնելն սկզբից ևեթ կազմել են ամերիկյան բուրժուական գաղափարախոսության կարևոր առանձնահատկությունը։ Ժամանակակից բուրժուական պատմաբան Թ. Բեյլին գրում է, թե բարձրագույն ռասայի վերաբերյալ առասպելի ամերիկյան վարկածը «մեզ ուղեկցել է Մասաչուսետսի ծովածոցում գաղութի հիմնման առաջին օրերից ի վեր։ Այն համոզմունքը, թե մենք աստծո ընտրյալ ժողովուրդն ենք և մեր ազնիվ դեմոկրատական ինստիտուտները խավարի մեջ ընկղմված մնացած ամբողջ աշխարհում տարածելու աստվածային մանդատ ունենք, մեզ քաջալերել է մեր ուսերին կրելու սպիտակ մարդու բեռը Ֆիլիպիններում և ամենուր XIX—XX դարերի սահմանագլխին» («Mith and the American Experience», vol. 1, N. Y., 1973, pp. 11—12)։

Այդ զավթողական կայսերական գաղափարախոսությունը, ամերիկյան բացառիկության և «աստծո ընտրյալները» լինելու փիլիսոփայությունն ընկած էին «Մոնրոյի դոկտրինայի» հիմքում, որը հռչակվեց 1823 թվականին՝ արևմտյան կիսագնդում ԱՄՆ-ի գերիշխող դիրքի հիմնավորման և հաստատման նպատակով։ Դրանք լայն գաղափարափիլիսոփայական հիմք են ծառայել երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ում ստեղծված փաստորեն բոլոր արտաքին քաղաքական ծրագրերի և դոկտրինաների համար։ Արդարացնելով ԱՄՆ-ի կայսերական-գերիշխանական նկրտումները՝ Հ. Տրումենը արդեն 1945 թ. դեկտեմբերի 19-ին Սպիտակ տանն ունեցած ելույթում հայտարարում էր. «Ցանկանում ենք մենք այդ, թե՝ ոչ, բայց պետք է ընդունենք, որ մեր տարած հաղթանակը ամերիկյան ժողովրդի վրա է դրել աշխարհի հետագա ղեկավարման համար պատասխանատվության բեռը»։ Սահմանելով ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության խնդիրները՝ Դ. Էյզենհաուերը ԱՄՆ-ի պրեզիդենտ եղած ժամանակ արտահայտվում էր այդ նույն ոգով. «Հանուն մարդկության՝ ազատության պայմաններում խաղաղության և արդարացիության ձգտումների, աշխարհի ղեկավարման մշտական բազան պետք է լինեն Միացյալ Նահանգները»։ Լ. Ջոնսոնի վարչակազմում փոխպրեզիդենտ Հ. Հեմֆրին պաթետիկորեն բացականչում էր. «Հանձին վաղվա Ամերիկայի ես տեսնում եմ հիրավի աշխարհի մայրաքաղաքը»։

«Նեոգլոբալիզմի» դոկտրինան միևնույն ժամանակ էապես տարբերվում է ամերիկյան իմպերիալիզմի նախորդ ագրեսիվ դոկտրինաներից, ունի իր առանձնահատկությունները, կոնկրետ պատմական յուրօրինակությունը։ Ամենից առաջ 80-ական թվականներին լրջորեն փոխվեցին ընդհանուր միջազգային պայմանները, մարդկությունն ապրում է իր զարգացման որակապես առանձնակի մի շրջան։ Այսօր իրավիճակը պահանջում է քաղաքական նոր մտածողություն, սկզբունքորեն նոր մոտեցում ողջ մարդկության համար միասնական նպատակին հասնելուն՝ նրա գոյատևումն ապահովելուն։ Զանգվածային ոչնչացման զենքի քանակն ու որակը հասել են դժվար կառավարելի ծայրագծին, ստեղծվում են զենքի նոր, ամենից առաջ կոսմիկական սիստեմներ և տեսակներ, որոնք անխուսափելիորեն աշխարհը կնետեն ապակայունացման քաոսը և ողջ մարդկությանը կկանգնեցնեն միջուկային աղետի

«Արագ արձագանք» այն հեղափոխական փոփոխություններին, որոնք տեղի են ունենում նախկին գաղութային և կիսագաղութային աշխարհում: «Նեոգլոբալիզմի» ագրեսիվ դոկտրինան հանդես է գալիս կոմունիզմի դեմ «խաչակրաց արշավանքի» կոչով: Ահա թե ինչու այսօր առանձնակի այժմեականություն է ձեռք բերում ամերիկյան քաղաքական գործիչ Ու. Ֆուլբրայթի **Ուժի ինքնավստահությունը** գրքում արտահայտված այն միտքը, թե հակակոմունիզմը «մեզ ստիպեց սկզբունքներ տեսնել այնտեղ, որտեղ ընդամենը շահեր են գտնվում, և դավադրություն՝ այնտեղ, որտեղ տեղի է ունեցել միմիայն դեպքերի անհաջողակ զուգադիպում: Եվ երբ այս ամենը մնացածի նկատմամբ դառնում է գերադաս, կոնֆլիկտները վերաճում են խաչակրաց արշավանքների, իսկ բարոյականությունը դառնում է մոլորություն և երեսպաշտություն» (Дж. У. Фульбрайт. Самонадеянность силы, с. 247): Հիրավի կոնֆլիկտների՝ ատոմային ռումբը ձեռքին խաչակրաց արշավանքի վերածման վտանգը 80-ական թվականներին զգալիորեն աճեց: Կ. Ուայնբերգերի «հորիզոնական էսկալացիան», Ռ. Ռեյգանի «նեոգլոբալիզմը» նման վտանգի գաղափարաքաղաքական և տեսական արտահայտություններն են:

Այդ վտանգին դիմակայում է Սովետական Միության, սոցիալիստական երկրների գիծը, որի նպատակն է բոլոր երկրների սուվերենության հարգման, նրանց ներքին գործերին չմիջամտելու հիման վրա վերացնել բոլոր «տեղական» և «ռեգիոնալ» կոնֆլիկտները՝ հաշվի առնելով երիտասարդ պետությունների պատմական, քաղաքական, սոցիալ-տնտեսական և այլ առանձնահատկությունները: Սովետական Միության այդ գիծը ցուցադրվեց Ռեյկյավիկում և հետագա փաստաթղթերում, խաղաղության և զինաթափման հարցերի վերաբերյալ կոնկրետ առաջարկություններում և գործողություններում:

---

## Մեծ Հայրենականի տարեգրության էջերից

# ՄԱՐՏԱԿԱՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

**Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՍԵՐՈՒՆԴ պատմության մեջ է մտնում ամենից առաջ այն գործերի շնորհիվ, որ ինքն է արարում՝ հարստացնելով իր նախորդների ստեղծածը: Այս առումով իրավամբ վիթխարի է ներկայիս ու գալիք սերունդների համար անմոռաց այն ներդրումը, որ մեծ Հայրենականի տարիներին մեր հայրենիքի պաշտպանության, այնուհետև պատերազմի հաղթական ավարտից հետո նրա տնտեսության վերականգնման ու հզորության ամրապնդման գործում կատարել ու կատարում է սովետական իշխանության գոյության առաջին տարիներին աշխարհ եկած սերունդը: Թե պատմությունը ինչպիսի մեծ փորձություն էր պատրաստել այդ սերնդի համար, երևում է թեկուզ այն բանից, որ պատերազմի նախօրյակին և նրա ընթացքում այն գրեթե ամբողջությամբ զենքի կոչվեց: Այդ սերնդի մարդիկ ռազմի դաշտում իրենց պսակեցին խիզախ մարտիկի անթառամ փառքով՝ ընդմիշտ ժողովրդի հիշողության մեջ մնալով որպես ահեղ փորձության ժամին զինվորական երդմանը մինչև վերջին շունչը հավատարիմ լինելու իսկական օրինակ: Նրանցից շատերն այլևս տուն չվերադարձան, ընկան մարտում՝ իրենց կյանքը զոհաբերելով Հայրենիքի անկախության ու ազատության համար մղվող հերոսական պայքարում: Իսկ նրանք, ովքեր բախտ ունեցան տեսնելու հաղթանակի օրը, ամբողջ ժողովրդի հետ ուս-ուսի լծվեցին երկրի խաղաղ շինարարության գործին:*



*Պատերազմի ավարտից ավելի քան չորս տասնամյակ հետո էլ մեր հպարտությունն են մեծ Հայրենականի վետերանները, որոնք այսօր նաև աշխատանքի վետերաններ են: Նրանք մարմնավորում են ինչպես պատերազմական օրերի սխրանքը, այնպես էլ նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան սերունդների կապը, օրինակ ծառայում նոր կյանք մտնող սերնդի համար: Նրանց կյանքը, անցած մարտական ու աշխատանքային ուղին արժանի են իրենց մնայուն տեղը ունենալու մեր ժամանակների տարեգրության էջերում:*

*Հայրենական մեծ պատերազմի բովում կոփ-*

# ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆ. ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆ

**Ս. ԵՐԻՑՅԱՆ**

ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացման և վերակառուցման՝ կուսակցության ստրատեգիական կուրսի թելադրանքով այսօր սովետական հասարակության կյանքում առավել մեծ նշանակություն են ստացել մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցները, այդ թվում՝ նաև հեռուստատեսությունը: ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց ավելի արդյունավետ օգտագործել հեռուստատեսության գաղափարախոսական հզոր պոտենցիալը, առանձնակի ուշադրություն դարձնել հաղորդումների բովանդակալիության, գաղափարագեղարվեստական մակարդակի և գրավչության բարձրացմանը:

Հեռուստատեսությունը ներկայումս ոչ միայն մեր երկրում, աշխարհում տեղի ունեցող կարևորագույն իրադարձությունների մասին լրատվության ամենամասսայական ու օպերատիվ միջոց է, այլև յուրատեսակ արվեստ: Այն ավելի նշանակալի տեղ է զբաղեցնում գեղարվեստական մշակույթի մեջ, ձևավորում է հասարակական կարծիք, ծառայում որպես նրա ամբիոն: Հեռուստատեսությունը դաստիարակում, լուսավորում, ուսուցանում է մարդուն, կազմակերպում նրա ազատ ժամանակը, հանգիստը, առանձնահատուկ դեր խաղում հասարակական ու մշակութային կյանքում:

Կենտրոնական հեռուստատեսությունից բացի, երկրում գործում են 115 ծրագրային հեռուստատեսային ստուդիաներ, որոնցից 14-ը՝ հանրապետական: Սա վիթխարի պրոպագանդիստական ուժ է: Հայաստանի հեռուստատեսությունը ընդհանուր միութենական համակարգի անխզելի բաղադրամասն է: Նրա զարգացումն այսօր պահանջում է հաշվի առնել կենտրոնական հեռուստատեսությունում կատարված վերակառուցման փորձը, ինչպես նաև ամբողջովին օգտագործել սեփական հնարավորությունները՝ ելնելով տեղական առանձնահատկություններից: Հանրապետության հեռուստատեսությունը հաղորդումները վարում է երկու ծրագրով, որոնց ընդհանուր միջին օրական ծավալը կազմում է 13,5 ժամ, այդ թվում սեփական հաղորդումները՝ 6,5 ժամ: Վերջին ժամանակներս մեր հեռուստածրագրերում էական փոփոխություններ են կատարվել, երևան են եկել նոր հրատապ հաղորդումներ, վերանայվել են հիմնական հաղորդաշարերի և հանդեսների ուղղվածությունն ու բովանդակությունը:

Հեռուստատեսությունն այսօր զարգանում է երկու հիմնական ուղղություններով: Առաջինը հասարակական-քաղաքական հաղորդումներն են, որոնք չի կարելի պատկերացնել առանց ինֆորմացիոն ծրագրերի: Այժմ, «Լրաբեր» հիմնական ծրագրից բացի, պատրաստվում են «Նորությունների» ևս երեք թողարկումներ և հիմնական թողարկման առավոտյան տարբերակը՝ «24 ժամ առաջ» անվանումով, որոնց ընդհանուր ծավալը կազմում է 1 ժամ 15 րոպե: Դա նպաստում է լսարանը հեռուստատեսային ինֆորմացիայով առավել լրիվ ընդգրկելուն: Միաժամանակ աճել են ինֆորմացիաների լիակատարությունը, բարելավվել դրանց մեկնաբանությունների որակը: Ինֆորմացիոն հաղորդումները դառնում են ավելի վերլուծական, պրոբլեմային:

Ինֆորմացիաների բովանդակալիությունն ու արդյունավետությունը բարձրացնելու նպատակով հարստացվում է թողարկումների թեմատիկան, որոնք հաղորդաժամերի ծրագրերում ունեն մշտական տեղ: Ուժեղացել է հաղորդումների հակապրոպագանդիստական ուղղվածությունը, որին է ծառայում «Իրադարձություններ, երկրներ, պրոբլեմներ» հաղորդումը: «Լրաբեր» ծրագրում բարելավվել են միջազգային ինֆորմացիայի պլանավորումն ու մատուցման ձևերը: Սակայն այդ գլխավոր ինֆորմացիոն թողարկումը դեռևս գտնվում է իրադարձություն պարունակող նյութի մատուցման նոր ձևերի ու մեթոդների որոնման սկզբին: «Լրաբերի» հաջող քայլերից նշենք այն փաստը, որ ծրագրի հիմնական բաժինները հաղորդավարների փոխարեն վարում են, առայժմ շաբաթը մեկ անգամ՝ կիրակի օրերին, մեկնաբան-ժուռնալիստները:

Մեր կարծիքով, հանրապետության հեռուստատեսության համար գլխավոր թողարկման այս ձևը հեռանկարային է: Առաջին արդյունքները ցույց են տալիս, որ այս դեպքում թողարկումը դառնում է առավել շարժուն, աշխույժ, ինֆորմացիայով հագեցած, վերլուծական ինֆորմացիան ստանում է վառ, անձնավորված բնույթ: Բացի այդ հաղթահարվում է նաև շտամպը, ավելի լավ են օգտագործվում հեռուստատեսային հրապարակախոսության լսատեսողական հնարավորությունները, ավելի լիակատար հաշվի առնվում ունկնդիրների ինֆորմացիոն պահանջմունքները: Ընդ որում, ինչպես ցույց են տալիս սոցիոլոգիական հետազոտությունները, լսարանում հաստատվում է հոգեբանական կողմնորոշում դեպի հեռուստատեսային նորությունները: Իսկ դա ոչ միայն բարձրացնում է հեռուստանորությունների հեղինակությունը, ուժեղացնում հետաքրքրությունը դրանց նկատմամբ, այլև նոր խնդիրներ է առաջադրում հեռուստատեսության աշխատողներին:

Հեռուստատեսային ինֆորմացիայի հիմքը իրադարձությունն է, որի արդյունավետությունը պայմանավորված է հեռուստաէկրանում նրա լուսաբանման օպերատիվությամբ: Ամբողջությամբ վերցրած՝ օպերատիվությունը հեռուստատեսությունում զգալիորեն աճել է, թեպետ անելիքներ դեռևս շատ կան: Մինչև օրս հեռուստատեսությամբ ցուցադրվում են իրադարձություններ, որոնց մասին արդեն գիտենք առավոտյան թերթերի նյութերից: Իսկ երբեմն էլ եթեր են արձակվում այնպիսի նյութեր, որոնք կարող էին հաղորդվել ավելի ուշ: Առանձին իրադարձությունների լուսաբանման առկա փորձը (ասենք, «Էրեբունի—Երևան» տոնի, հանրապետական նշանակության կառույցների գործարկման) ցույց է տալիս, որ հեռուստաէկրանն այդ առումով ունի ստեղծագործական ու տեխնիկական մեծ հնարավորություններ: Մեր կարծիքով, օպերատիվ կերպով ինֆորմացիայի հեռուստաէկրան դուրս գալուն խանգարում է նաև նախապես «Լրաբեր» ծրագրի տեսագրումը:

Նորությունների թողարկումների դինամիկությունը մեծապես պայմանավորված է հաղորդման ռիթմով, բազմավոր հաղորդումների և կինո-տեսագրված նյութերի քանակով: Կատարված վերլուծությունը ցույց է տալիս, որ «Լրաբեր» ծրագրի որակը հաճախ տուժում է ավելորդ ձգձգված կինոսյուժեներից: Թողարկման մեջ հաճախ մտցվում են 4—5 րոպեանոց սյուժեներ, այն դեպքում, երբ ամբողջ հաղորդման տևողությունը 30 րոպե է: Ստացվում է, որ ժամանակի 40 տոկոսը գրավում է երկու-երեք նյութ: Իսկ եթե սյուժեն առանձնապես կարևոր է, ապա պետք է ձգտել հակիրճության: Սյուժեների ծավալների կրճատումից թողարկումը միայն շահում է, դառնում ինֆորմացիայով ավելի հագեցած: Սոցիոլոգները հաստատում են, որ ինֆորմացիոն թողարկումների համար լավագույնը կարճ, մինչև երկու րոպեանոց հաղորդումներն են, որոնք լսարանի վրա ավելի արդյունավետորեն են գործում: Չպետք է մոռանալ, որ ինֆորմացիոն ծրագիրը խիստ կարգորոշված է, հաշվի են առնվում նույնիսկ վայրկյանները:

Մեր ժամանակներում ինֆորմացիոն հեռուստահրապարակախոսությունը արագորեն զարգանում է, ձեռք բերում նոր բովանդակություն, բացում նոր եզրագծեր: Դրա վկայությունն է պրոբլեմային, սուր քննադատական նյութերի, հեռուստաելույթների ներգործության բարձրացումը: Այս առնչությամբ հարկ է հիշատակել ոչ միայն ինֆորմացիոն բոլոր ժանրերով գրված նյութեր պարունակող թողարկումների, այլև «Հսկում է օբյեկտիվը» խորագրով հաղորդման դերը: Վերջինս, օգտագործելով փաստը կամ շարունակելով հանրապետության սոցիալ-տնտեսական և կուլտուրական կյանքի մասին սկսած խոսակցությունը, օպերատիվորեն ու հանգամանորեն քննարկում է տարբեր պրոբլեմներ, երևույթներ: Ցավալի է, սակայն, որ առանձին ղեկավար աշխատողներ, ինչպես այդ մասին նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1986 թվականի հոկտեմբերյան պլենումում, ոչ միայն հրաժարվում են մասնակցել հաղորդումներին, այլև հարկ չեն համարում պատասխանել հեռուստատեսության քննադատական նյութե-

րին: Դատապարտելով նման ղեկավարների դիրքորոշումը՝ պլենումն ընդգծեց, որ «Այսուհետև էլ պետք է հրապարակավ խոսել բոլոր թերությունների մասին, բացահայտել կյանքի ստվերոտ կողմերը: Եվ բոլոր ընկերները, առաջին հերթին՝ ղեկավար աշխատողները, պետք է ձգտեն վերացնել թերությունները և ոչ թե աշխատեն թերթերի էջերից և հեռուստացույցի էկրանից վերացնել քննադատական նյութերը: Այդպիսի վերաբերմունքի համար շատ խիստ հաշիվ կպահանջվի»:

Այսօր, ավելի քան երբևէ, անհրաժեշտ է հեռուստաէկրանը օգտագործել հասարակայնորեն կարևոր պրոբլեմներ քննարկելու համար՝ ունկնդիրների նամակների և հեռախոսային զանգերի հիման վրա: Լավ նախաձեռնություն էր հանրապետության հեռուստատեսության կազմակերպած «Հեռուստատեսային պրեսկոնֆերանսը», որին մասնակցեցին կառավարության անդամներ, մինիստրությունների, պետական կոմիտեների, գերատեսչությունների ղեկավար աշխատողներ: Հաղորդումն արժեքավոր էր այն բանով, որ հեռուստադիտողներն ամենաիրազեկ աղբյուրից իմացան տարբեր ոլորտներում գործերի վիճակի, ճյուղի պրոբլեմների ու հեռանկարների զարգացման մասին: «Սկզբնաղբյուրից հաղորդվող նման սպառիչ, ժամանակին և ստույգ ինֆորմացիան մարդկանց նկատմամբ վստահության վկայություն է, աշխատավորների սոցիալական ակտիվության բարձրացման, պետության կառավարմանը նրանց հաղորդակից դարձնելու ներգործուն միջոց: Մյուս կողմից, հանդիպումները ղեկավարներին ապահովում են բնակչության հետ «հետադարձ կապով», ինչպես նաև ծառայում ժողովրդի առջև հաշվետվության յուրահատուկ ձև, որը սոցիալիստական դեմոկրատիայի պայմաններում նրանց համար պարտադիր է՝ ինչպիսի պաշտոն էլ զբաղեցնելիս լինեն» («Правда», 5 мая 1986):

Հեռուստատեսային պրեսկոնֆերանսին բնորոշ է «ուղղակի եթերի» գործոնը՝ հեռուստադիտողների անմիջական մասնակցությամբ: Հաղորդման ընթացքում նրանք հեռախոսով զանգահարում են ստուդիա և մասնակիցներին հարցեր տալիս: Հասարակական կարծիքը պարզելու և հրապարակելու պրոցեսը, սոցիալական կառավարման մարմինների կողմից նրա օգտագործման մասին ինֆորմացիա տալը կատարվում են հեռուստալսարանի ներկայությամբ: Իսկ քանի որ գոյություն ունի անխզելի կապ, մի կողմից, հասարակական կարծիքի, նրա արտահայտման նկատմամբ իրազեկության և, մյուս կողմից՝ դրա ազդեցության ուժի միջև, ապա այդ հաղորդումները բոլոր նախադրյալներն ունեն բարձրացնելու հեռուստահաղորդման արդյունավետությունն ու գործունությունը: Ժամանակը պահանջում է էլ ավելի հաճախակի դարձնել այդպիսի հաղորդումները, անշուշտ, հաշվի առնելով ժուռնալիստիկայի այս ասպարեզում ձեռք բերված փորձն ու առաջավոր միտումները:

«Գյուղական հորիզոններ», «Հրատապ էկրան» հեռուստատեսային հանդեսների առանձին թողարկումներ համոզիչ կերպով ցույց են տալիս ուղիղ եթերի առավելությունները, երբ ժուռնալիստը զրուցակցի հետ անկեղծ, անկաշկանդ խոսակցություն է վարում՝ առանց նախօրոք պատրաստած «հերթապահ» հարցերի և, բնականաբար, ստանում նմանատիպ պատասխաններ: Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում, այդպիսի ելույթները պետք է «ակտիվորեն նպաստեն մասսաների կենդանի ստեղծագործության, աշխատավորների, կոլեկտիվների նախաձեռնության լայն ծավալմանը, աշխատանքում ստեղծագործական կողմի ուժեղացմանը, մեր զարգացման արագացման խնդրի լուծման համար, լենինյան խոսքերով ասած, համոզման բավականաչափ լայն ու պատկառելի հիմքի ստեղծմանը»:

Հանրապետության հեռուստառադիոպետկոմի վերը նշված և մյուս հաղորդումները հավաստում են, որ հեռուստաէկրանը սկսել է ավելի սուր դնել սոցիալ-տնտեսական պրոբլեմները, ավելի ակտիվորեն պայքարել թերությունների դեմ: Այլ կերպ ասած, հեռուստատեսության գաղափարախոսական ֆունկցիան առավել սերտորեն է առնչվում սոցիալ-տնտեսական գործունեության, հասարակական կյանքի հետ:

Վ. Ի. Լենինը սովետական իշխանության արշալույսին նշել է, որ «... մամուլը գերազանցապես օրվա քաղաքական նորությունները հաղորդող օրգանից պետք է վերածել բնակչության մասսաների տնտեսական դաստիարակության լուրջ օրգանի» (ԵԼԺ, հ. 36, էջ 181): Լենինյան այս պահանջն իր ողջ հրատապությունը պահպանում է նաև այսօր՝ բացահայտելով նաև հեռուստատեսային պրոպագանդայի հնարավորությունները: Ոչ միայն նշված «Հրատապ էկրան», այլև «Հասցեն հայտնի է», «Մեր ժամանակակիցը» և մյուս հաղորդաշարերում զգացվում է ժամանակի ոգին. դրանք աչքի են զարնում ցայտունությամբ, հուզականությամբ, սուր հրապարակախոսական բնույթով: «Հասցեն հայտնի է» խորագրի հաղորդումները ներկա-



յացնում են սոցիալական կյանքում, էկոնոմիկայում կատարվող փոփոխությունները: Նկատելի երևույթ են դարձել նաև «Մեր ժամանակակիցը» խորագրով հաղորդումները, որոնցում ցուցադրվում է լավագույնների փորձը, բացահայտվում 80-ական թվականների աշխատավոր մարդու հոգևոր աշխարհը:

Հեռուստատեսությունը ոչ միայն ագիտացիայի և պրոպագանդայի միջոց է, այլև ունի կազմակերպչական ֆունկցիաներ իրականացնելու մեծ ռեզերվներ: Ժողովրդատնտեսական կարևոր խնդիրների լուծման գործում աճում են հեռուստատեսության դերը, նրա ելույթների արդյունավետությունն ու գործունեությունը: Ինչպես վկայում են կուսակցական կազմակերպությունների, գերատեսչությունների ու մինիստրությունների պաշտոնական պատասխանները, հեռուստաէկրանում բարձրացված հարցերը գերազանցապես լուծում են ստանում: Ելույթների հետքերով կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում: Հանրապետության, նրա առանձին շրջանների ու քաղաքների ժողովրդատնտեսական պրոբլեմներին նվիրված հեռուստահաղորդումների շնորհիվ ընդունվել են հույժ կարևոր որոշումներ: Ալավերդու կարի միավորման, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի, կոշիկի արդյունաբերության ձեռնարկությունների կոնկրետ պրոբլեմներին հեռուստատեսության միջամտությունն օգնեց դրանցում արագացնել վերակառուցման տեմպերը:

Լայն ընդունելություն է գտել «Որտեղ ինչպես են կառուցում» հաղորդաշարը, ուր խիստ քննադատվում են շինարարության մեջ առկա թերությունները, կոնկրետ ցույց տրվում կառուցվող օբյեկտների ցածր որակը, խոտանարարներին: Հաղորդաշարն աչքի է ընկնում իր օպերատիվությամբ, հետևողականությամբ ու ընդգրկման մասշտաբներով:

Պրոբլեմային, սուր հրապարակախոսական բնույթ ունի նաև «Էլեկտրաէներգիա. շռայլության պատճառները» հաղորդաշարը, որը հեռուստատեսային հետազոտման օգնությամբ բացահայտում է հանրապետության էներգետիկայի խնդիրները:

Տնտեսական կյանքի վրա հեռուստատեսության և ինֆորմացիայի մյուս միջոցների ներգործությունն անհամեմատ ավելի մեծ կլինի, եթե նրանք սերտորեն համագործակցեն միմյանց հետ: Այսօր պրոպագանդայի մակարդակի բարձրացումը պահանջում է նրա բոլոր միջոցների միասնություն և փոխգործողություն: Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների դերն ու անելիքները մեր գաղափարախոսական աշխատանքում հստակորեն սահմանված են: Սակայն մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության միջոցով այդ ֆունկցիաների իրականացման բնույթը՝ դրանց համատեղ գործունեության պրոցեսում, որոշվում է նրանցից յուրաքանչյուրի առանձնահատկություններով: Այլ կերպ ասած, փոխգործողության ժամանակ անհրաժեշտ է առավելագույնս օգտագործել այդ միջոցներից յուրաքանչյուրի հնարավորությունները: Հեռուստատեսությունում, ռադիոյում և մամուլում իրականացվող վերակառուցումը պահանջում է զարգացնել ոչ միայն նրանց միջև գոյություն ունեցող՝ աշխատանքները կոորդինացնելու ավանդական ձևերն ու մեթոդները, այլև գտնել, արմատավորել նոր եղանակներ: Ասենք, ինչո՞ւ չստեղծել մի հեռուստատեսային հաղորդում, որի հիմքը կազմեն հանրապետական առաջատար թերթերի հրապարակախոսական նյութերը: Կամ ինչո՞ւ մամուլը չշարունակի հեռուստատեսության սկսած խոսակցությունը: Կարևոր է, որ այդ ամենը կրի համաձայնեցված, կանոնավոր բնույթ: Միգուցե դրա համար հարկ է ստեղծել կոորդինացիոն կենտրոն: Հստակ, գիտականորեն հիմնավորված կոորդինացումն անհրաժեշտություն է և՛ հեռուստատեսության, և՛ ռադիոյի գործունեության մեջ:

Հեռուստածրագրերում մեծ տեղ են գրավում մարքս-լենինյան ուսմունքը, կուսակցության պատմական փորձը, ՍՄԿԿ XXVII համագումարի և հետագա պլենումների որոշումները, հանրապետության կուսկազմակերպությունների գործունեությունը պրոպագանդող հաղորդումները: Դրանցում տեսական դրույթները կապվում են մեր կյանքի, նրա տարբեր ոլորտներում կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների գործունեության հետ:

Ժամանակը հեռուստատեսության առջև նոր խնդիրներ է դնում: Վերակառուցման շահերը պահանջում են շրջադարձ կատարել դեպի կյանքի պրոբլեմները, էապես բարձրացնել հաղորդումների գաղափարաքաղաքական մակարդակը, հարստացնել դրանց մատուցման ձևերը: Կուսակցական և պետական կազմակերպությունների աշխատանքում հրապարակայնության կենդանի ցուցադրումը, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում թերությունների վերհանումը միաժամանակ ենթադրում են սովետական մարդկանց կյանքի ու առօրյայի խոր ու համակողմանի

ցուցադրում: Այս թեման իր արժանի տեղը պետք է գտնի կոմիտեի բոլոր գլխավոր խմբագրությունների հաղորդումներում:

Սովետական ժողովուրդը պատրաստվում է նշելու ինչպես մեր երկրի, այնպես էլ համաշխարհային պատմության մեջ բեկումնային իրադարձության՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-րդ տարեդարձը: Հոբելյանի առթիվ հանրապետության հեռուստատեսության աշխատողները, իհարկե, սահմանել են իրենց անելիքները: Այս գործում, անշուշտ, ամենակարևորն այն է, որ հեռուստատեսությունը, օգտագործելով իր ողջ զինանոցը, հեղափոխության պատմական նշանակությունը ներկայացնի սովետական հասարակության մեջ այժմ իրականացվող արմատական վերափոխումների հետ օրգանապես շաղկապված, որպես մեծ Հոկտեմբերի գործի շարունակություն, նրա իդեալների հաստատում: Հեռուստահաղորդումներում Սովետական Հայաստանի նվաճումների փաստարկված, հետաքրքիր, շաբլոնից զերծ ցուցադրումը, մեր աշխատավորների այսօրվա և վաղվա գործերի կարևորության մասին էկրանից նրանց հետ անկաշկանդ ու անկեղծ խոսակցությունը պետք է սերտորեն առնչել վերակառուցման ու սոցիալ-տնտեսական զարգացման ներկա փուլում հանրապետության առջև ծառացած խնդիրների լուծման հետ:

Հեռուստատեսության հիրավի աննախադեպ մասսայականությունը ուղղակի պարտավորեցնում է մեծագույն պատասխանատվությամբ վերաբերվել հաղորդումների գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը, քայլել հեղափոխական վերափոխումների մեր ժամանակին համընթաց, հաղորդումներից իսպառ բացառել պարզունակությունն ու անճաշակությունը:

Հեռուստատեսության առջև ծառացած մասշտաբային խնդիրները կարող են իրականացվել միայն բավարար թվով համապատասխան մասնագետների առկայության դեպքում: Գաղտնիք չէ, սակայն, որ հենց այդ հարցում հեռուստատեսությունը մեծ օգնության կարիք է զգում: Իսկ առանց այդ խնդրի արմատական լուծման դժվար է շեշտակի բարեփոխումներ ակնկալել: Հավանաբար համապատասխան կադրերի պակասից է, որ երբեմն թղթակցի դերում էկրանից հանդես են գալիս ամենքիս ծանոթ հաղորդավարները: Հենց առաջին րոպեներից զգացվում է, որ վարող-հաղորդավարը փորձում է հրապարակախոսի դեր խաղալ: Բնական է, որ նախորդ օրը գրական կամ մանկական հաղորդում վարած հաղորդավարը չի կարող հասու լինել արդյունաբերության կամ բնության պահպանության պրոբլեմներում: Նման դեպքում հեռուստաէկրանը տեղ է տալիս անհրազեկությանը, արհեստականությանը, մակերեսայնությանը:

Փոքր էկրանը, ինչպես հաճախ անվանում ենք հեռուստատեսությունը, դարձել է իսկական համաժողովրդական ամբիոն: Այն ոչ միայն արտացոլում է հասարակական կարծիքը, այլև մեծապես նպաստում է ձևավորմանը: Հեռուստատեսությունն ապահովում է ինչպես ողջ լսարանի, այնպես էլ նրա առանձին խմբերի իրազեկվածությունը, տարբերակված մոտեցում ցուցաբերում այդ խմբերի նկատմամբ, հաշվի առնում նրանց հետաքրքրություններն ու պահանջմունքները: Միաժամանակ հասարակական կյանքի պրոբլեմային և բազմակողմանի լուսաբանման, ճանաչված հեղինակների ընդգրկման միջոցով հեռուստատեսությունը կյանքի բազմազան հարցերի վերաբերյալ մշակում է գնահատականներ ու հետևություններ: Այսօր անհնար է այն պատկերացնել առանց հանդիսատեսի խոսքի, կարծիքի, գնահատականի: Այս տեսանկյունից զարգացման արդի փուլում հեռուստատեսությունը գերազանցում է մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի մյուս միջոցներին: Սոցիոլոգիական հարցումները ցույց են տալիս, որ հեռուստադիտողների 90 տոկոսը գերադասում է ինֆորմացիա ստանալ էկրանից: Դա վերաբերում է նաև մեր հանրապետությանը: Միջին հեռուստադիտողը 1,5—2 ժամ է անցկացնում փոքր էկրանի մոտ, որը գերազանցում է թերթերի ընթերցմանն ու ռադիոունկնդրմանը հատկացվող ժամանակը: Հատկապես կարևոր է, որ մարդիկ ավելի շատ ժամանակ են ծախսում հասարակական-քաղաքական հաղորդումների դիտման վրա:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, մարդկային գործոնի կարևորման ներկա պայմաններում ավելի մեծ նշանակություն է ստանում հեռուստադիտողների հետ կապը: Վերջինիս ավանդական ձևը նրանց նամակներն են, որոնց քանակը տարեցտարի ավելանում է: 1986 թվականին ՀՍՍՀ հեռուստառադիոպետկոմը ստացել է 57.916 նամակ-թղթակցություն՝ 7.828-ով ավելի, քան 1985-ին: Փոխվում է նաև փոստի որակը: Վերջին ժամանակներս լայն արձագանք են ունենում հասարակական-քաղաքական հաղորդումները: Նամակագիրները բարձրացնում են



կարևոր հարցեր՝ կապված կյանքի տարբեր ասպարեզներում իրականացվող վերակառուցման հետ: Հեռուստադիտողների նամակների հիման վրա պատրաստվում են հատուկ հաղորդումներ: Սակայն նրանց հետաքրքրությունների, նախասիրությունների ուսումնասիրման համար սոսկ նամակներն ու հեռախոսազանգերը այսօր քիչ բան կարող են տալ: Ժուռնալիստներին օգնության են եկել սոցիոլոգիական հետազոտությունները, լսարանի ուսումնասիրման այլ ձևեր ու մեթոդներ: Սոցիոլոգիական հետազոտությունների բաժինը, մի կողմից, ուսումնասիրում է հաղորդումների ու ծրագրերի որակը, նոր հաղորդաշարերի ստեղծման հնարավորությունը, մյուս կողմից՝ վերլուծում լսարանի դիտողություններն ու առաջարկությունները: Սրանց արդյունքները օպերատիվորեն քննարկվում են կոմիտեի կոլեգիայի նիստերում, ընդունվում որոշումներ: Հեռուստառադիոպետկոմի սոցիոլոգիական ծառայության գործունեությունը ցույց է տալիս, որ պետք է ամրապնդել կապը հեռուստադիտողների հետ, նրանց կարծիքների հիման վրա վերակառուցել շատ հաղորդումներ, է՛լ ավելի լայնորեն կիրառել աշխատանքի արդյունավետ մեթոդները:

Հայկական հեռուստատեսության գրական-գեղարվեստական, թատերական, երաժշտական հաղորդումները և կինոծրագրերը ճանաչում են գտել նաև երկրում: Բայց չպետք է անտեսել այն փաստը, որ մի շարք հաղորդումներ ամենևին չեն զարդարում հեռուստաէկրանը, բնավ չեն նպաստում մարդկանց գեղագիտական դաստիարակությանը: Ի դեպ, հեռուստառադիոպետկոմի կուսկոմիտեն և կոլեգիան իրենց միացյալ ընդլայնված նիստում անդրադարձել են դրամատիկական հաղորդումների հարցին: Այնտեղ ամենայն անաչառությամբ նշվել է, որ հեռուստաթատրոնը պատշաճորեն չի հարստացնում ազգային մշակույթը, որ մեր հեռուստատեսային դրամատուրգիան զարգացնելը խիստ անհրաժեշտություն է դարձել: Եվ ահա անցած ժամանակաշրջանում կոմունիստների, կոլեկտիվի համապատասխան օղակների ուժերով նկատելի տեղաշարժեր են կատարվել, բարձրացել է հեռուստատեսային բեմադրությունների գաղափարագեղարվեստական մակարդակը, ընդլայնվել խաղացանկը: Սակայն դա, իհարկե, միայն սկիզբն է:

Հեռուստատեսությունն օգնում է ժողովրդական ստեղծագործության զարգացմանն ու տարածմանը, հասարակական ուշադրության արժանացնում մոռացված գանձերը: Ժողովրդական բանահյուսության «Ակունք» անսամբլի գոյությունը հաստատում է, որ հեռուստատեսությունը օգնում է մեր լավագույն ավանդույթների վերածննդմանը: Հեռուստադիտողների շրջանում մեծ ընդունելություն է գտել «Մեր լեզուն, մեր խոսքը» հաղորդաշարը, որը ուսումնական ծրագրից վերածվել է նպատակաուղղված հանդեսի:

Ժամանակակից հեռուստատեսությունը պահանջում է հրատապություն, այլ կերպ ասած, հարկավոր է հաշվի առնել, թե ինֆորմացիան որքանով է առնչվում օրվա խնդիրների հետ և ինչպես է արտացոլում մարդկանց հետաքրքրությունները: Հրատապությունը պետք է հատուկ լինի ոչ միայն առանձին հաղորդմանը, այլև յուրաքանչյուր օրվա փոխկապված ծրագրերին: Իսկ դա պահանջում է ընդլայնել և ամրապնդել գործնական կապերը կոմիտեի բոլոր գլխավոր խմբագրությունների միջև:

Ընթացիկ հնգամյակում հետագա զարգացում է ապրելու հանրապետության հեռուստատեսությունը: Ինչպես նշվեց ՀԿԿ XXVIII համագումարում, 1990 թվականին հանրապետական և միութենական առաջին ծրագրերով հեռուստատեսային հաղորդումներով կընդգրկվի հանրապետության բնակչության համապատասխանաբար 99,9 և 99,4 տոկոսը:

Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարների հետ ընթացիկ տարվա փետրվարին ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած հանդիպման ժամանակ Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Ավելի շատ գործարարություն, ավելի քիչ ընդհանուր դատողություններ վերակառուցման օգուտի մասին. այսպիսին պետք է լինի այսօր մասսայական ինֆորմացիայի միջոցների ելույթների լեյտմոտիվը»:

Հայկական հեռուստատեսության աշխատողները այս հանձնարարականի ոգով էլ վերանայում ու վերակառուցում են իրենց գործունեությունը:

---

գանք գրված է Հ. Հակոբյանի նրանի նրան բանաստեղծության հետևյալ քառյակը՝

Սիրում եմ կռիվ ընդդեմ բռնության,
Կռվի մեջ է լոկ իմ անդորրություն.
Կռվեցե՛ք և դուք զոհեր մահառման,
Կռվով պիտ գտնեք դուք երջանկություն:

Ռուսաստանյան հեղափոխության հուժկու վերելքի օրերին մարքսիստական մամուլում, ՌՍԴԲԿ կազմակերպությունների թռուցիկներում և գրական ժողովածուներում հայերեն լույս տեսած բանաստեղծությունները, այդ թվում և «Կայծի» պոեզիան երկրի պրոլետարիատի հաղթանակը կերտելու գործում նույնպիսի կարևոր դեր են կատարել, ինչպես աշխատավորներին մոբիլիզացնելու բոլշևիկների կազմակերպական աշխատանքները, բանավոր ու գրավոր պրոպագանդայի մյուս բոլոր միջոցները: Համոզիչ փաստերով ու օրինակներով թերթը ցույց է տվել ժողովրդի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքի ռեալ պատկերը, բանվորների ու գյուղացիների հեղափոխական ելույթները, պրոպագանդել մարքսիստական տեսության հիմնական հարցերն ու խնդիրները, հեղափոխության ստրատեգիան ու տակտիկան: Բարձր սկզբունքայնությունը, հետևողական պայքարը պրոլետարական ինտերնացիոնալիզմի համար կազմել է բոլշևիկյան մամուլի, այդ թվում և «Կայծի» բնորոշ գիծը:

Այս իմաստով Վ. Ի. Լենինի մարտական զինակիցներ Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի ղեկավարած «Կայծը» որակական նոր երևույթ էր նախահեղափոխական հայ պարբերական մամուլի պատմության մեջ: Նրանց հրապարակած մի շարք հոդվածներ հանրակրթական նշանակություն էին ստացել: «Հայ բոլշևիկ լրագրության և գեղեցիկ գրականության անդրանիկ առաքյալները,— գրել է Հ. Հակոբյանը,— առաջին դեր ունեցան կատարելու հայ զանգվածների դասակարգային գիտակցության արթնացման մեջ»:

«Կայծը» ենթարկվում էր ցարական գրաքննության դաժան հետապնդումներին, ինչպես երկրի մյուս բոլշևիկյան թերթերի ու հանդեսների խմբագրությունները:

Այսպես, «Պետական դումայի բացման առթիվ» 1906 թ. ապրիլի վերջին համարում լույս տեսած առաջնորդողի «հակակառավարական» բովանդակության համար ժանդարմական գործակալները բռնագրավեցին տպարանում մնացած այդ համարի օրինակները և դատական հետաքննություն սկսեցին «Կայծի» դեմ: Նույնը կատարվեց նաև 1906 թ. մայիսի 10-ի համարում «Պետական դումայի ընտրությունների առթիվ ՌՍԴԲԿ կոչը» հրապարակելու կապակցությամբ: Գրաքննիչների դրակոնյան միջոցներն առավել ուժեղացան, երբ «Կայծի» հուլիսի 21-ի համարում Ստ. Շահումյանի Պետական դումայի արձակումը և հեղափոխությունը առաջնորդող հոդվածի հրապարակման առիթով մինչև դատական պրոցեսը, որպես գրավ, խմբագիր-հրատարակչից պահանջվեց հազար ռուբլի: Հետևանքն այն եղավ, որ Թիֆլիսի դատաստանական պալատի որոշմամբ 1906 թ. օգոստոսի 7-ից բոլորովին արգելվեց նրա հրատարակությունը:

Ռուսաստանի 1905—1907 թթ. հեղափոխության ալիքների վրա բարձրացած բոլշևիկյան «Կայծ» թերթը մարքս-լենինյան գաղափարներով տոգորված հոդվածների ու կոչերի կողքին տպագրել է նաև հեղափոխական արձակի ու պոեզիայի բոցաշունչ ստեղծագործություններ, որոնք աշխատավորներին ոգեշնչել են հեղափոխական անզիջում պայքարի:

---

Հանձնված է շարվածքի՝ 07.04.87 թ.: Ստորագրված է տպագրության 13.05.87 թ.: ՎՖ 02844:
Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 18732: Պատվեր 883:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: